84
Բ-83

# ՍԷՎԻՅԼԻ ՍԱՓՐԻՉԸ

ԿԱՏԱԿԵՐԳՈՒԹԻՒՆ

ՀԵՂԻՆԱԿ
ՊՕՄԱՐՇԷ

ԹԱՐԳՄԱՆԻՉ
Մ. ՄԱՄՈՒՐԵԱՆ

Printed in Turkey



ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԹԻՒՐՔՃԵԱՆ
— 1862 —

# ՍԵՎԻԼԻ ՍԱՓՐԻՉԸ

## ԿԱՏԱԿԵՐԳՈՒԹԻՒՆ
### Ի ՉՈՐՍ ԱՐԱՐՍ

ԴԵՐԱՍԱՆՔ

1. ԱԼՄԱՎԵԱՆ ԿՈՄՍ. Սպանիոյ նախարար, Վարդուհիին անծանօթ տարփածուն.
2. ԲԱՐԹԱՄ. Բժիշկ ու Վարդուհիին դաստիարակը.
3. ՎԱՐԴՈՒՀԻ. Ազնուազարմ օրիորդ մը.
4. ՖԻԿԱՐՕ. Սեվիլի Սափրիչը.
5. ՎԱՍԻԼ. Վարդուհիին երաժշտութեան դասատուն.
6. ԵՐԱՆԴՈՒՆ. Բարթամին ծերունի ծառան.
7. ԱՐԹՈՒՆ. Բարթամին ուրիշ մէկ սպասաւորը, որ տխմար եւ քնասէր մանչ մըն է.
8. Նօտար մը.
9. Պաշտօնակալ մը արդարութեան.
10. Շատ մը ջահակիր զինուորներ եւ ծառաներ.

---

*(Առաջին Արարին տեսարանն է Սեւիլ (1) քաղաքը, փողոցի մը մէջ և Վարդուհիին տան պատուհաններուն տակը. իսկ միւս Արարներուն տեսարանին տեղին է, Բարթամ բժիշկին տունը).*

---

## ԱՐԱՐ ԱՌԱՋԻՆ

*(Տեսարանը պիտի ներկայացնէ վանդակաշէն փեղկեր ունեցող տուներով փողոց մը).*

---

### ՏԵՍԻԼ Ա.

ԿՈՄՍ *(Թիկնոցին մեծ վերարկու մը հագած՝ ծածկուած գլխարկ մը գլուխը դրած կ'երեւի և կսկսի ժամացոյցը նայելով պտըտիլ).*

---

ԿՈՄՍ. *Բնաւ չէի կարծեր որ այսքան կանուխ ըլլայ. ըստ սովորականին աղջկան վանդակին ետեւէն երեւալուն դեռ բաւական ժամանակ կայ, հոգ չէ. փոքր ինչ պայմանաժամէն առաջ գալը լաւագոյն է.*

քան թէ ուշ գալ եւ զանի տեմնելու առիթը ձեռքէ փախցունել. կը մտածեմ որ եթէ սա միջոցին արքունի տան նազելի մէկ բամբիշը Մատրիտէն հարիւր մղոն հեռի ըլլալըս գուշակէր, եւ անծանօթ կնիկան մը պատուհանին ներքեւ գիշերիս ծակէ մը տեմնէր, անտարակոյս եմ որ զիս Իզաբէլլա թագուհւոյն ժամանակակից սպանիացի մը տեղ կը դնէր. Թող նա այնպէս կարծէ. ամէն մարդ սովոր է երջանկութեան ետեւէն վազել. ես ալ կը յուսամ Վորդուենիին սրտին մէջ իմ երջանկութիւնս գտնել. Բայց դարձեալ ինչ անըմտութիւն է Մատրիտի պէս քաղքէ մը հեռանալ, ուր ամէն կողմէ գիրանալ եւ հեշտալի զուարճութիւններ կը տեղան, եւ գալ Սեվիլի քաղաքը կնիկան մը ետեւէ իյնալ. Եւ միթէ ես ալ այս հեշտութիւններէն զզուելուս համար չէ՞ որ անկէց փախայ։ Է՛հ, յիրաւի բոլորովին ստակացած եմ շահամոլ, կեղծաւոր եւ նախանձոտ ոգիէ ծնած պարգեւներէն։ Ուստի որչափ գովանի ու քաղցըր է միայն իր յատուկ անձին համար ուրիշին սէրը գրաւել. եթէ մի անգամ ես ալ կարենայի այս ծրագրեալ կերպարանօքս ստուգել թէ... Է՛հ, սատանան տանի սա գլխացաւը.

## ՏԵՍԻԼ Բ.

### ՖԻԿԱՐՕ, ԿՈՄՍ. (Պահուըտած)

ՖԻԿ. (Լայն ժապաւէնով մը կռնակէն վար կիթառ մը կախած, ուրախ զուարթ կերգէ, թուղթ ու մատիտ 'ի ձեռին)։

Փարատենք ցաւ եւ միշտ
Որ մեզի կը տանջեն,
Լաւ գինին կրակ է միշտ
Որ հոգին, բորբոքէ.
Անուրախ մարդ միայն
Օրն 'ի բուն կը հեծէ,
Իբրեւ խենդ կապրի այն
Եւ սեւ հող շուտ կիջնէ...

Է՛հ գէշ չէ. ծայրը գտայ, հըմ, հըմ.

Գինին ու ծուլութիւն
Սրտիս մէջ կը կռուին,

Բայց չէ. ինչու համար կռուին. ընդ հակառակն իրարու հետ իբրեւ եղբայր կը սիրեն....

Սրտիս մէջ... կը սիրեն
Եղբօր կը սիրեն, կընայ ըլլալ.

Է՛հ, ես ալ բծախնդիր մէկն եմ. մեր ողբերգութիւն կարկըտող պարոններն անգամ այսչափ բարակը չեն փնտռեր։ Այսօրուան օրս չի խօսուելիք բաները անգամ երգելու կը յանդգնին։ (Կերգէ)։

Գինին եւ ծուլութիւն
Սրտիս մէջ կը սիրեն,

Սա երգիս, սիրուն փարփլուն, չողչողուն, գաղափարի մը նմանող վերջաւորութիւն մը կուզեմ տալ։ (Մէկ ծունկը կը դնէ եւ երգելով կը գրէ)։

Մէկ իմ սիրոս տէրն է
Միւսն է իմ խնդութիւն.

Է՛հ, նորէն չեղաւ, անհամ եւ անլի բան մը դարձաւ... հակադրեմ իմաստ մը. իմաստութիւն մը պէտք է այս տողիս մէջ.

Մէկ իմ սիրոս... տէրն է.

Միւսն է իմ . . .

Ա՛հ, լեզուիս տակը կը պտըտի . . . ։

Միւսն է իմ . . . սպաս արթուն ։

Ապրիս Ֆիկարօ։ (Բոլորը կը գրէ երգե-լով)։

Գինին եւ ծուլութիւն
Սրտիս մէջ կը տիրեն
Մէկն իմ սիրոյ տէրն է
Միւսն է իմ սպաս արթուն
Միւսն է իմ սպաս արթուն
Միւսն է իմ սպաս արթուն

Հը՛մ, հը՛մ, թէ որ այս երգիս հետ երաժշտութիւնն ալ ձայնակից ըլլայ ալ դուք կը պապանձիք բանսարկու քերթողներ. դուք որ իմ ոտանաւոր-ներս անպի եւ անխնամ են կըսէք։ (Կոմսը կը տեսնէ) կարծեմ թէ ես սա աբեղան տեղ մը տեսած եմ։ (Ոտք կելնէ)։

ԿՈՄՍ։ (Մեկուսի) Այս մարդը ինծի անծանօթ չէ։

ՖԻԳ։ Բայց չէ, աբեղայի սեւ ե-րեսը չունի ։ Իր վէս եւ ազնուական կերպարանքէն կերեւի թէ . . . ։

ԿՈՄՍ։ Այս մարդուն ծաղրաշարժ դէմքը . . . ։

ՖԻԳ։ Սխալ չեմ դուշակած, այս նոյն ինքն Ալմավիւան կոմսն է ։

ԿՈՄՍ։ Կարծեմ թէ սա՝ Ֆիկարօ անուն սրիկայ է։

ՖԻԳ։ Այո, նոյն ինքն եմ, Տէր իմ . . . ։

ԿՈՄՍ։ Ձայնդ քեզ քաշէ, անըզ-գամ դզեզ . . . ։

ՖԻԳ։ Ոչ, ձայն չեմ հաներ, Տէր իմ։ Այդ ընտանեկան խօսքէդ զձեզ իսկոյն ճանչցայ, եւ 'ի վաղուց հե-տէ այդպիսի մակդիրներով պատուած էք զիս։

ԿՈՄՍ։ Իսկ ես հազիւ հազ զքեզ ճանչցայ. այդ որչափ եղ կապեր ու-գիրցեր ես ։

ՖԻԳ։ Չէ՛ք ըսեր, Տէր իմ, որ թշուառութեան նշան է ։

ԿՈՄՍ։ Ո՛հ, խեղճ մարդ, բայց բանդ գործդ ինչ է Սեւիլլի մէջ. ժամանակաւ գրագրութեան պաշ-տօնի մը համար քեզ յանձնարարա-կան գիր մը տուած էի, ինչ ըրիր ։

ՖԻԳ։ Ստոյգ է, նոյն պաշտօնը ձեռք ձգեցի, Տէր իմ. եւ իմ ե-րախտագիտութեանս չափը . . . ։

ԿՈՄՍ։ Լէնտոր անուանէ զիս. չես տեսներ որ ծպտեալ եմ եւ չեմ ու-զեր ճանչցուիլ ։

ՖԻԳ։ Լաւ ուրեմն, ես մէկդի քաշ-ուիմ ։

ԿՈՄՍ։ Փաչուէ չեմ ըսեր, հոս տեղ բանի մը կսպասեմ, երկու հո-գի որ կը խօսակցին այնքան կաս-կածելի չեն երեւիր, որքան որ ա-ռանձնակի պտըտող մարդ մը։ Խօսք մը բաց, լաւ, ըսէ նայիմ, այն պաշ-տօնդ ուր մնաց ։

ՖԻԳ։ Ձեր վսեմութեան յանձնա-րարական գրին շնորհիւ, տէրու-թեան պաշտօնակալը իսկոյն զիս դեղագործի մը օգնական ըրաւ ։

ԿՈՄՍ։ Կարելի է բանակին հի-ւանդանոցին ծառայելու համար ։

ՖԻԳ։ Ոչ, Անտալուսեայի նահան-գին անասնոց երամակին մէջ դրաւ ։

ԿՈՄՍ։ (Ծիծաղելով) Ի՛նչ գեղեցիկ սկզբնաւորութիւն ։

ՖԻԳ։ Ոչ. պաշտօնս գէշ չէր, այնքան դժգոհ չէի. վասն զի դեղերի եւ դարմանի մատակարարութիւնը իմ ձեռքս ըլլալուն, շատ անգամ ձիերու տալիքս դեղեր մարդոց կը ծախէի . . . ։

ԿՈՄՍ. Ուրեմն ի՞նչ պատճառաւ թողուցիր այդ շահաւոր պաշտօնդ.

ՏԻԿ. Ես մի թողուցի զայն, թէ ո՛չ ան զիս, բանաստեղծ սատանան քիթը այս գործիս մէջ ալ խօթեց. Գիտէք անշուշտ բանաստեղծին սա խօսքը.

Նախանձն ճիրանաւոր, գժգոյն
եւ մահագէմ . . . .

ԿՈՄՍ. Է՛հ բարեկամ, մնացածը դուն յիշէ, դուն ըսէ. Միթէ ոտանաւոր ալ կը հիւսես. Այս առտու կանուխ քերթողական եղանակով ըն-ռնկած ծնկիդ վրայ բան մը մրմ-ռելդ եւ երգելդ տեսայ.

ՏԻԿ. Ահա այս է, վսեմափայլ Տէր, իմ աղէտից բուն իսկ պատ-ճառը. Երբոր գացին պաշտօնէին ա-կանջը ձգեցին թէ ես երգեր կրնամ ըսել. միտոն երգեր Աստղիկին կը նուիրեմ, թէ լրագրաց հանելուկներ կը լուծեմ եւ բերնէ բերան իմ եր-գիծական նուագներս կը գեղգեղեն, մէկ խօսքով, երբ իմացաւ որ զիս ողջ ողջ կը տապալեն, պատկերս կը նկարեն, գործին եղեռնական ձեւ մը տուաւ եւ զիս ճամբեց, պատ-րուակ բռնելով թէ գրագիտութիւնը գործունէութեան հետ անհամաձայն է.

ԿՈՄՍ. Աքանչելի դատողութիւն, միթէ ՚դուն չպատասխանեցիր անոր . . . .

ՏԻԿ. Ամենեւին ոչ. այնքանով ձեռքէն պրծելուս ուրախ էի, որ-դէն հաւատոյ ըլլալով որ մեծ մար-դիկ մեծ բարիք մը ըրած կըլլան մեզի թէ որ չարիք մը մեր գլխին չհասցունեն.

ԿՈՄՍ. Բայց դուն գրքին մինակ մէկ երեսը կը կարդաս ինծի. որ-դէն քաջ կը յիշեմ որ իմ տպա-ւորութեանս եղած տանդ հա-նած փառածին մէկն էիր.

ՏԻԿ. Ա՛հ, անիրաւ մի՛ ըլլաք, Տէր իմ, կը պահանջէք միշտ որ ազգասէր անձերի եւ անզգամներէ ըլլայ.

ԿՈՄՍ. Դոյլ, զանգակ, անճռո-նի . . . .

ՏԻԿ. Արդեօք ձեր Վսեմութիւնը կրնայ ցոյց տալ ինծ այնպիսի տէրեր որ, պաշտօնեայներէն պահանջուած ձիրքերուն նկատմամբ՝ ծառայ ըլլա-լու չափ արժանաւորութիւն ունե-նան.

ԿՈՄՍ. (Մեծաղելով) Հա, հա, քա-ջը տեղը գրիր. Ուրեմն պաշտօնէդ եղար հոս եկար.

ՏԻԿ. Չէ, ուղղակի հոս չեկայ.

ԿՈՄՍ. (Ընդմիջելով) Վայրկեան մը սպասէ . . . կարծեցի թէ ան է . ո. հիմա շարունակէ ականջս քեզի է.

ՏԻԿ. Մադրիտ դառնալուս նո-րէն գրագիտական տաղանդս փորձել ուզեցի, եւ թատրոնը ընտրեցի իբ-րեւ պատուաբժան ասպարէզ մը . . . .

ԿՈՄՍ. Է՛հ, շատ մի երկնցուներ.

ՏԻԿ. (Պատասխան տալու տեղն, կոմսը աւելի ուշիուշով փնտռածները կը գրէ) Ցիրաւի կը զարմանամ որ ինչու հա-մար թատրոնական փորձս ձախորդ գնաց. վասն զի որչափ որ հանդի-սարանը շատ մը արքանեակներով լեցուցի, ամփոփատոներու նման վարձկան ձեռքեր գտնեցի, անձայն ծափահարութիւն պատճառողներ, ինչպէս թաթպան, դաւադան ար-գելեր էի, եւ ճշմարիտը ըսելով գետ խաղը չխաղացած բոլոր հան-դիսականք յաջողութեանս բարե-մաղթու էին, բայց դարձեալ ինչ-պէս եղաւ չգիտեմ, կամ թէ ը-

բանտարկութեան թոյնը . . . ։

ԿՈՄՍ ։ Հասկցայ · բանտարկութեամբ հեղինակը թաւալգլոր ըներին ։

ՖԻԿ ։ Ինչպէս որ ամէն հեղինակի ալ ճակատագիրն այս է ։ Բայց ինչ վնաս ունի · ծափ զարնելու տեղ սուլեցին թատերգութեանս · թէ որ անգամ մըն ալ նոյն հանդիսականները այս տեղս գումարեմ, ես գիտեմ ինչ պիտի ընեմ . . . ։

ԿՈՄՍ ։ Անշուշտ մահու չափ պիտի ձանձրացունես զանոնք վրէժ առնելու համար ։

ՖԻԿ ։ Ո՛հ , թշուառականներ , որչափ թունալից ոխ կայ սրտիս մէջ ։

ԿՈՄՍ ։ Մի՛, մի՛ հայհոյեր · դատաստանական ատեանի մէջ անգամ դատաւորները անիծելու համար միայն քսան եւ չորս ժամ կուտան ։

ՖԻԿ ։ Թատրոնին մէջ քսան եւ չորս տարի ունինք · մարդուս կեանքը չիբաւեր անբաղդ հեղինակի մը վրէժը փարատելու ։

ԿՈՄՍ ։ Ֆիկարօ , քու զուարթուն բարկութիւնդ զիս կը զուարճացընէ ։ Բայց մոռցար ըսելու թէ որո՞ւն դրդմամբ Մադրիտէն ելար ։

ՖԻԿ ։ Իմ պահապան հրեշտակիս , վեհափառ Տէր իմ , որ զիս նորէն երջանկացուց առջեւդ հանելով ։ Երբ տեսայ որ Մադրիտի մէջ գրագիտական ասպարէզը գիշատիչ գայլերու որջ դարձեր է եւ իրենց մոլեգնութեամբը ամենուն ծաղր ու ծանակ եղեր են , երբ գիտեցի որ սա հասարակ գրագիտաց մորթը ծակող, կճող , աղուն , դեռուն , մժեխ , տզրուկ , կրիտիս , բանտարկու , գրքածախ , լրագիր , քննիչ եւ այս գունակ պիծակներու խումբ մը , այն գրագէտներուն ծուծը հաներ եւ գըլուխնուն փոքրիկ ըղեղն ալ հատացուցեր են , ես ալ գրիչս մէկդի նետեցի , ինքզինքէս յուսահատ , ուրիշներէ զզուած , պարտքի տակ ընկըղմած՝ եւ անարծաթ բժիշկի պէս Մադրիտէն ելայ · մտածելով միանգամայն որ ածելիիս օգտակար եկամուտը գրչին բերած անուն ու անօթի փառքէն գերամեծար է ։ Ուստի ծրարս շալակս զարկի , Գաստիլյ , Մանչ , Մորէնա , եւ ուրիշ մեծ ու պզտիկ քաղաք ու գիւղ փիլիսոփայօրէն պտըտեցայ ։ Տեղ մը չնորհալիր ընդունելութիւն գտնելով անդին բանտ մտնելով · բայց միշտ արկածներու առջեւ անվեհեր եւ ամէնուն կերեւէի ։ Ո՛րը գովեստ , ո՛րը պարսաւ, ո՛րը ծեծ կուտար ինծի , հովաչարժ տերեւի մը պէս ժամանակին բերմանց կը յարմարէի , մերթ վիշտ , մերթ բերկրութիւն կրելով · ինքներուն քթէն բռնելով անդրդամներուն բերնին չափը տալով թշուառութեանս վրայ խնդալով եւ ամենուն ալ մօրուքը քերթելով վերջապէս հոս Սեվիլյա հասայ եւ հաստատուեցայ ։ Հիմայ նորէն պատրաստ եմ ձեր Վսեմութեան ծառայելու եւ ձեր հրամանքին սպասելու ։

ԿՈՄՍ ։ Այս շէն ու զուարթ փիլիսոփայութիւնը ո՞վ սորվեցուց քեզ ։

ՖԻԿ ։ Թշուառութեան ընտանութիւնս ։ Հոգ , ցաւ , վիշտ մը զգալուս կամ գուշակելուս պէս կանխեմ անոր վրայ խնդալ , որպէս զի լալու չստիպուիմ ։ Բայց դուք անդադար սա կողմը ինչո՞ւ կը նայիք ։

ԿՈՄՍ ։ Շուտ փախչինք ։

ՅԻԿ. Ինչու համար.

ԿՈՍՏ. Թշուառական, ետեւէս եկու, զիս մատնելու միտք ունիս. (կը փախչին).

ՏԵՍԻԼ Գ.

ԲԱՐԹԱՄ, ՎԱՐԴՈՒՀԻ

(Առաջին դափկոնին վանդակը կը բացուի. Բարթամ և Վարդուհի պատուհանը կը նստին).

ՎԱՐԴ. Քանի ախորժելի է մաքուր օդ ծծելը. այս վանդակին այ տարին անգամ մը հազիւ կը բանանք։

ԲԱՐԹ. Ձեռքիդ թուղթը ինչ է.

ՎԱՐԴ. Զայնաւոր դաստիարակս յօրինած անօգուտ զգուշութեան անուն երգին նուագներն են.

ԲԱՐԹ. Ի՞նչ բան է Անօգուտ զգուշութիւն.

ՎԱՐԴ. Նոր կատակերգութիւն մը.

ԲԱՐԹ. Անտարակոյս նոր դրամա մը, նորանոր ցնորք մըն է.

ՎԱՐԴ. Իրաւի ես ալ չգիտեմ.

ԲԱՐԹ. Էօ՛ֆ, էօ՛ֆ, մեր դարը ալ լրագրաց եւ գրագիտաց ձեռքը մնացեր է, այս ինչ բարբարոս դար, այս ինչ . . . .

ՎԱՐԴ. Նախատինք չի մնար որ մեր խեղճ դարին դէմ չարձակես.

ԲԱՐԹ. Ներէ համարձակութեանս, այս դարս ինչ գովելի բան ծնած ունի, բայց եթէ ամեն տեսակ անպիտանութիւն. ինչպէս, խորհելու, գրելու ազատութիւն, կրօնից թոյլատուութիւն, ձգողութիւն, ելեքտրականութիւն, պատուաստ, ընկերութիւն, թատրոն . . .

ՎԱՐԴ. (Թուղթը ձեռքէն փողոցը կիյնայ) Վա՜յ, երգս, երգս վար ինկաւ, ուշադրութիւն քեզի տուած ատենս վազէ՛, Պարոն, շուտ վազէ մա որ չի կորսուի.

ԲԱՐԹ. Միթէ այսօր շաբաթ է, մարդս բռնածը լաւ բռնել պէտք է . . . (Պատուհանէն կը հեռանայ).

ՎԱՐԴ. (Դէպ ի ներս կը քաշուի և փողոցը մէկուն կը նշմարէ) Շդ . . . շդ . . . (կոմսը կերեւի) Շուտ, շուտ սա թուղթը վերցուր եւ անհետացիր. (կոմսը ցատկելը, թուղթը առնելը ու քաշուիլը մէկ կընէ).

ԲԱՐԹ. (Տունէն դուրս կելլայ և կըսկսի որոնել) Ո՞ւր է թուղթը, թուղթ, մուղթ չի կայ հոս.

ՎԱՐԴ. Պատուհանին վարեւը նայէ, պատին տակովը, աղէկ . . . անդին . . .

ԲԱՐԹ. Վարձքդ կատար, այս ինչ աղուոր գործի կզբաղեցնես զիս. ուրեմն սա տեղէն մէկը անցած առած է զայն.

ՎԱՐԴ. Ես անցնող դարձող մը չի տեսայ.

ԲԱՐԹ. (Ինքնիրենը) Իսկ ես խելքիս միամիտ որ ականջներս կախեր կը մտնաւեմ. Բարթամ, յիրաւի խենդ ես. այս դէպքը ականջիդ օղ ըլլայ որ ուրիշ անգամ վանդակը չի բանաս. (Ներս կը մտնէ).

ՎԱՐԴ. (Որ դեռ պատուհանն է) Թըշ-ուառութիւնս միայն ըրածս կրնայ արդարացնել. Երբ այսպէս միայնիկ, փակուած՝ եւ զզուելի մարդու մը հա-լածանքը կը քաշեմ, միթէ յանցանք է գերութենէ ազատելու համար այս ըրած փորձս.

ԲԱՐԹ. (Պատուհանը կ'երեւի) Նե՛րս մտիր, սիրուհիս, ներս. Երգդ կոր-սնցնելուդ պատճառը ես եմ. բայց հաւաստի եղիր որ այս առաջինն ու վերջինն է, այսուհետեւ այսպիսի առիթ մը ձեռքդ պիտի չանցունես (Պատուհանին փեղկը կը կղպէ).

---

## ՏԵՍԻԼ Դ.

### ԿՈՄՍ, ՖԻԿԱՐՕ (Զգուշութեամբ ներս կը մտնեն)

---

ԿՈՄՍ. Ներս դարձին, մարդ չի կայ, հիմա քննենք սա երգը. անշուշտ խորհրդաւոր իմաստ մը ունի. ահա նամակ մը կայ.

ՖԻԿ. Անշուշտ ծերունիին ԱՆՕԳՈՒՏ ԶԳՈՒՇՈՒԹԵԱՆ իմաստին ինչ ըլլալը հիմայ պիտի հասկնայ.

ԿՈՄՍ. (Աշխուժով կը կարդայ) «Ձեր ե-ռանդը իմ հետաքրքրութիւնս կը շարժէ. դաստիարակս դուրս ելլե-լուն պէս այս նուագին եղանակին վրայ սկսէ անտարբեր կերպով մը երգել թէ ինչ անուն, վիճակ եւ դիտաւորութիւն ունիս դուն. որ այս-պէս յամառութեամբ թշուառ Վար-դուհիին կապուեր ես».

ՖԻԿ. (Վարդուհիին ձայնը կեղծելով) Երգս, երգս վար ինկաւ, վազէ, վազէ առ. (Կը ծիծաղի) Հէ, հէ, հէ, հէ. ահ, կանայք, սա կանայքը. կուզես ատանցմէ ամէնէն միամիտը ամէնէն նենգաւորը ընել, զանի կըղ-պակի տակ փակէ.

ԿՈՄՍ. Իմ սիրական Վարդուհիս.

ՖԻԿ. Տէր իմ, դիմակիդ նշանա-կութիւնը ալ գաղտնիք մը չէ ինծի համար. խելքս հիմայ հասաւ որ հե-տուանդ հեռու սիրահարներ էք.

ԿՈՄՍ. Համեստութեան մէկ ծայրը գը-տար, բայց թէ որ թոյլ բերանդ . . .

ՖԻԿ. Ես, թոյլ բերան եմ. Ես հաւատարմութիւն ցուցնող եւ նոյն օրը դրժող մարդոց պէս մեծ մեծ չեմ ջարդեր իմ անձնանուիրութեանս վրայ. Միայն խօսք մը ունիմ, շա-հուս համար գերիդ կըլլամ. ահա ամէն բան առով կշռեցէք, եւ . . .

ԿՈՄՍ. Լաւ, լաւ. արդէն գիտ-ցիր որ վեց ամիս առաջ Մադրիտի մէջ պատահմամբ նորափթիթ եւ գեղանի օրիորդի մը հանդիպեցայ . . . այս օրիորդը ահա հիմա տեսար. Քաղքին մէջ ամէնկին չի ձգեցի, ըն-դունայն փնտռելուս. Քանի մը օր կայ իմանալս որ այս աղջկան անու-նը Վարդուհի է, ազնուական տոհ-մէ, որբ եւ այս քաղքիս Բարթոլ անուն ալեւոր բժիշկին հետ կար-գուեր է եղեր.

ՖԻԿ. Յիրաւի, նկարագրածդ գե-ղեցիկ թռչնիկ մըն է, բայց բոյնէն հանելն է դժուար բանը. Ձեզի ով ըսաւ որ բժիշկին հետ ամուսնա-ցեր է.

ԿՈՄՍ. Ամէն մարդու բերանն է.

ՖԻԿ. Մադրիտէն դառնալուն

նոյն ինքն բժիշկը այդ պատմու-
թիւնք Համրեց կնամոլ պարոնները
պատրելու մտօք · տակաւին իր ա-
շակերտութիւնն անպակաս է , բայց
շատ չանցնիր փչեղէն . . . .

ԿՈՄՍ. (Աշխուժութեամբ) Ա՛հ , ցանկալի լուր · ինչ , դեռ պառկուած չէ , եւ որ անոր բարձին վրայ կողքայի, եւ կարեկցութիւնս պիտի յայտնէի ուրեմն նա ազատ է եղեր · խընդրեմ ժամանակ չանցնենք , պէտք է որ սէրս յայտնեմ եւ պատրաստուած գտանէն սիրտը նուաճեմ . Ֆիկարօ, մինչ դու կը ճանչնաս անոր գաստիարակը .

ՖԻԿ. Հօրս մօրս պէս .

ԿՈՄՍ. Ինչ տեսակ մարդ է այն

ՖԻԿ. (Եռանդով) Աղուոր , գիրուկ, կարճ , թարմ ծերունի մըն է , մոխրագոյն մազով , լեցուն մորթով , նենգաւոր ցլխով, ածխուած դէմքով, փառուն արտով որ օձի պէս կը խայթէ, ազնիւ պէս արիւն կը ծծէ , ամպի պէս կը գոռայ կատուի պէս ալ կը մռմռջէ .

ԿՈՄՍ. (Անհամբեր) Ես կերպարանքը տեսայ · բուն բնաւորութիւնը ինչպէս է.

ՖԻԿ. Մոլեգին , կծծի , սիրահեղձ եւ չափէն ծայր նախանձ իր սանին վրայ , որուն մահու չափ ատելի է ,

ԿՈՄՍ. Ըսել է թէ հաճելի ձիրքեր....

ՖԻԿ. Բնաւ չունի .

ԿՈՄՍ. Արքանչելի բան, հապա արդարամիտ է արդեօք .

ՖԻԿ. Այո, մի կախուելու չափ արդարամտութիւն ունի .

ԿՈՄՍ. Ատ ալ աղէկ , բաւ է թէ միր երջանկութիւնը ձեռք ձգել աշխատելու ատեն անզգամ մ'ալ պիտի պատժենք . . . .

ՖԻԿ. Այս նկատմամբ թէ մասնաւորի եւ թէ ընդհանուրի օգուտը մտածել է . Տէր իմ , գերահրաշ չէ՞ քաղաքականս .

ԿՈՄՍ. Զրուցի որ յանդուգն եւ իգաւէր մարդիկներէ վախնալով իր տանը դուռը գոց պահելու սովորութիւն ունի .

ՖԻԿ. Այո , ձեռքէն գայ դրան տեղ պատ կը քաշէ .

ԿՈՄՍ. Է՛հ, աս պէշ լուր մըն է · ինկ դուն անոր տան մէջ ինչպէս պիտի մտնես .

ՖԻԿ. Ինչեր կը հարցընէք · նախ աս գիտցիք որ բնակած տունս բըժիշկինն է եւ դրեթէ ձրի՞ է .

ԿՈՄՍ. Հա, հա .

ՖԻԿ. Այո , ինկ ես փոխարէն տարեկան վարձք տարը ոսկի տալու խոստացած եմ , բայց այս խոստմունքս ալ ձրի է .

ԿՈՄՍ. (Անհամբեր) Ինչ , մինչ դուն անոր տան վարձուորն ես .

ՖԻԿ. Ո՛չ միայն վարձուորը , այլ եւ իր սափրիչը , իր վիրաբոյժը , իր դեղագործն եմ . Առանց իմ հրամաննիս անոր տան մէջ ոչ ածելի կը շարժի , ոչ դեղ կառնուի , եւ ոչ քիթ կարիւնի .

ԿՈՄՍ. (Ձանի գրկելով) Ա՛հ , իմ բարեկամս , դու իմ պահապան հրեշտակըս , կարապետս պիտի ըլլաս .

ՖԻԿ. (Մեկուսի) Զարմանալի աշխարհ , նայէ մարդս իր օգտին համար որչափ վերէն վար կիջնէ . Իրաւ որ տաք գլուխ մարդիկ իմ բանիս շատ կուգան .

ԿՈՄՍ. Քաջաբաղդ Ֆիկարօ , գիտես արդեօք դու քանի երջանիկ ես որ իմ Վարդուհիս տեսնելու առիթ ունիս .

ՑԻՒՆ. Այս սիրահարի խօսք է, ես ամենեւին բան մը չեմ զգար. եթէ կուզէք իմ տեղս անցիք.

ՀՈՄՍ. Արդեօք Վարդուհին քովէն լրտեսները հեռացնելու հնար մը չիկա՞յ.

ՑԻՒՆ. Իմ մտմտուքս ալ ատ է.

ՀՈՄՍ. Դատ չէ. մինակ տասն երկու ժամուան համար Վարդուհին մինակ թողնել կուզէի.

ՑԻՒՆ. Ընելը դիւրին է. բայց պիտի գիտնաս որ մինչեւ որ մարդիկը իրենց յատուկ շահովը չզբաղեցընէնք. ուրիշին շահուն վնասելէն չեն դադրիր.

ՀՈՄՍ. Գիտեմ, բայց ինչ ընել կուզես.

ՑԻՒՆ. (Մտածելով) Ըսել կուզեմ թէ արդեօք իմ դեղագործութիւնս ամենեղ միջոց մը չի կրնա՞ր....

ՀՈՄՍ. Անօգուտ.

ՑԻՒՆ. Չէ մի կարծէք թէ վնասելու միտք կրեմ. արդէն դեղի կարօտ են. իմ մի միայն, միտքս բոլոր անցիքը դեղել է.

ՀՈՄՍ. Բայց եթէ բժիշկը կասկածի երթայ ան ատենը բանդ մէջ կերթայ.

ՑԻՒՆ. Այնպէս արագ արագ շարժել պէտք է որ կասկածելու ժամանակ չունենայ. Յանկարծ հիանալի դիւտ մը միտքըս ինկաւ. Գիտէք որ արքայադնին գունդը հոս Սէվիլլ պիտի գայ.

ՀՈՄՍ. Զօրապետը իմ սրտակից բարեկամն է.

ՑԻՒՆ. Շատ լաւ. ուրեմն յանձնարարական գրով մը բժիշկին ներկայացէք. նա ուզէ չուզէ ձեզի օթեւան մը կուտայ. իսկ մնացածին հոգը իմ վրաս թողէք.

ՀՈՄՍ. Սքանչելի հնար.

ՑԻՒՆ. Մանաւանդ թէ անպատեհ չըլլար թէ որ գլուխնիդ փոքր ինչ գինիին շոգիովը տաքցնէք.

ՀՈՄՍ. Ինչու համար.

ՑԻՒՆ. Եւ շուտով ձեր նպատակին կը հասնիք.

ՀՈՄՍ. Բայց ինչու համար.

ՑԻՒՆ. Որպէս զի չի կասկածի, եւ զձեզ քնանալու աւելի հակամէտ գտնէ քան թէ դաւեր գործելու.

ՀՈՄՍ. Գերագանց նախատեսութիւն. Բայց դուն այս դերը իմ տեղս խաղաս չըլլա՞ր.

ՑԻՒՆ. Ե՞ս, դուք որ անծանօթ էք փառք տալու էք թէ որ անոր առաջեւ այնչափ աչքին չիմանանուիք. մեր մէնաց ես, որ ինչ ծաղիկ ըլլալս գիտէ.

ՀՈՄՍ. Իրաւունք ունիս.

ՑԻՒՆ. Կարելի է որ այդ ձեր դըժուարին խաղը խաղալու կարող չէք .... Կրնանք արբշիռ ձիաւոր մը ....

ՀՈՄՍ. Միթէ զիս ծաղրել կուզես. (Գինովի ձայն մը կեղծելով) Միթէ Բարթամ բժիշկին տունը հոս .... չէ՞ .... մի բարեկամ.

ՑԻՒՆ. Քաջ է քաջ, մինակ ոտուընքնիդ փոքր ինչ աւելի շարժուն եւ դողդոջուն ըլլալու են. (Աւելի արբեցեալ կերպով) Հո ... ս չէ՞ մի ... տունը ....

ՀՈՄՍ. Կորիր թշուառական, ոգելէնքորի գինովութիւն է այդ.

ՑԻՒՆ. Աղէկն ալ այն է. դուարթութեան արդասիքն է.

ՀՈՄՍ. Ահա դուռը կը բացուի.

ՑԻՒՆ. Մէկ հոգին է. մինչեւ հետամուտը տակէց փախչինք.

## ՏԵՍԻԼ Ե.

### ԿՈՄՍ, ՖԻԿԱՐՕ, (Պահուըտած) ԲԱՐԹԱՄ

ԲԱՐԹ. (Դուրս ելլելով, տուն դարձած կը խօսի)։ Ես հիմա խոլոյն կը դառնամ. Ինչ անհամութեամբ վար ինկաւ թուղթը փնտռելու։ Աղաչել սկսելուն պէս կասկածիլ պէտք էր որ բան մը կայ... բայց Վասիլը ինչու այսպէս ուշացաւ գալու ինքը ամեն բան կարգի պիտի դնէր վաղուան ամուսնութեանս գաղտնապէս կատարուելուն համար եւ դեռ պիտի գայ. երթամ նայիմ ինչու չեկաւ։

## ՏԵՍԻԼ Զ.

### ԿՈՄՍ, ՖԻԿԱՐՕ

ԿՈՄՍ. Ի՞նչ էր լսածս, ուրեմն վաղը Վարդուհիին հետ գաղտնի պիտի ամուսնանայ.

ՖԻԿ. Տէր իմ, որքան յաջողելու դժուարութիւնը նոյնքան գործին ձեռնարկելու հարկաւորութիւնը կաւելնայ.

ԿՈՄՍ. Բայց իր ամուսնութեան գործակատար պարոն Վասիլ մարդը ձմ պիտի ըլլայ.

ՖԻԿ. Թշուառականին մէկը, որ Վարդուհիին երաժշտական դաս կուտայ. պարծենկոտ, նենգամիտ, փառա եւ ոսկիի համար հաւատքը ուրացող անձին մէկը. ան դիւրաւ կրնանք որսալ... (Վանդակը նայելով) Ահ, ... ահա կերեւի.

ԿՈՄՍ. Ո՞վ.

ՖԻԿ. Վանդակին ետին նայեցէք, ահա. չէ՞, մի՛ նայիք, խնդրեմ, մի՛ նայիք.

ԿՈՄՍ. Ինչու համար.

ՖԻԿ. Արդէն ինքը ձեզի չի գրեց որ երգէք ուրեմն անտարբեր կերպով մը սկսէք երգել, պարզապէս երգելու համար. օ՛հ, ահա, ահա.

ԿՈՄՍ. Որովհետեւ առանց զիս ճանչնալու իմ վրաս համակրութիւն մը կզգայ, այս իմ կեղծեալ լէնտօր անունս պիտի չի թողում. Խորհրդաւոր սիրոյ մը անուշութիւնը որչափ մեծ է. (Վարդուհիին նետած թուղթը կը բանայ) Բայց այս եղանակին վրայ ինչպէս երգելու է. ես նախ եւ առաջ ոտանաւոր շինել չգիտեմ.

ՖԻԿ. Խելքիդ փչածը ըսէք եւ հաւատացի եղիք որ գէշ չըլ, Սիրոյ մէջ շատ անգամ միտքէն ծընածը սիրտը կը խօսի... Առէք նայիմ սա իմ կիդարս.

ԿՈՄՍ. Ի՞նչ ընեմ, քանի որ զարնել ալ այնքան լաւ չգիտեմ.

ՖԻԿ. Մի՞թէ ձեզի պէս մարդ մը բան կայ որ չգիտնայ. Մատներով զարկեցէք, տրան, տրան, տրան... մի՞թէ լսած բան է Սեվիլյի մէջ առանց կիդարի երգել. աչքերնիդ բացէք, տէր իմ, ապա թէ ոչ օտարական ըլլալնիդ կը յայտնուի. (Ֆիկարօն պատուհանին տակ դէպ 'ի պատին կը փակի).

ԿՈՄՍ. (Ձեռք առնելով կերգէ կիդարի ձայնին).

### ՆՈՒԱԳ Ա.

Այս է քու հրամանդ, կուզես գիս ճանչնալ,
Թէեւ անծանօթ, քեզ կը պաշտէի.
Անունս տալով ի՞նչ կրնամ յուսալ,
Ո՞ գիտէ, խօսքիդ՝ կը պարտիմ անսալ.

ՖԻԿ. (Ցած ձայնով) Ընտիր, աքանչելի, տէր իմ, սիրտ առէք.

ԿՈՄՍ.

### ՆՈՒԱԳ Բ.

Լինտօր է անունս, ծնունդս գռեհիկ,
Իմ ուխտ եւ փափաք պարզ են եւ համեստ.
Ա՛հ, ինչու չունիմ կարգ չնաշխարհիկ,
Որ քեզ ընծայեմ հրեշտակ անուշիկ.

ՖԻԿ. Աստուած հայէ. ես որ բանաստեղծութեամբ կը պարծիմ ասկից աւելի աղուոր ոտանաւորներ չեմ կրնար յօրինել.

ԿՈՄՍ.

### ՆՈՒԱԳ Գ.

Հոս ամեն առտու՝ սրտահոս ձայնով,
Սէրս պիտի երգեմ, թէեւ եմ անյոյս.
Իմ միակ իղձ է, գոհ կալ քու տեսքով
Ո՛ւր էր եւ քո սիրտ վառէր նոյն իղձով.

ՖԻԿ. Ա՛հ. արդարեւ այս վերջինը գերազանց է... (Կը ծափէ և իր տիրոջը հանդերձին ծայրը կը համբուրէ).

ԿՈՄՍ. Ֆիկարօ.

ՖԻԿ. Վսեմափայլ տէր իմ

ԿՈՄՍ. Արդեօք ձայնս լսեց (Վարդուհին ներսէն կերգէ և այն միջոցին պատուհան մը աղմկով կը գոցուի).

ՖԻԿ. Հիմայ չէ՞ք կարծեր որ ձեր ձայնը լսած ըլլայ.

ԿՈՄՍ. Պատուհանը գոցեցին. կարծեմ թէ տունը մարդ մը մտաւ.

ՖԻԿ. Ա՛հ, խեղճ աղջիկ. ինչպէս կը դողդողայ երգելու ատենը. Տէր իմ, կերեւի թէ բռնուեցաւ.

ԿՈՄՍ. Ա՛հ, ինչ չնորհալի եւ իմաստալի կերպով կերգէ. Ֆիկարօ կը յուսամ որ իմ կինս ըլլալու յօժարի.

ՖԻԿ. Կը յուսամ, պայմանով եւ որ մանր աչքը կառնու զձեզ առնելու համար.

ԿՈՄՍ. Որքան այժմէն կեանքս Վարդուհիին կուխտեմ. պարոն Ֆիկարօ, խօսքս խօսք է. Վարդուհին իմ կենակիցս պիտի ըլլայ եւ թէ որ իմ խորհրդիս գործակից գտնուիս եւ անունս չի յայտնես, այն ժամանակ... 'ի հարկէ միտքս հասկցար, գիս լաւ կը ճանչես...

ՖԻԿ. Այո կը ճանչեմ եւ ձեր հրամանին ծառան եմ. Ո՛ն Ֆիկարօ, տղաս բաղդդ բացուեցաւ.

ԿՈՄՍ. Ասկից քաշուելու ժամա-

նակն է ։

ՖԻԳ. (Աշխուժով) Ես այս տունը կարող եմ մտնել , հոս իմ արհեստիս գործութեամբը եւ մոգական գաւազանովս ամէն բան պիտի փոփոխեմ ։ Այս , տան սպասեալ լրտեսները չլսացնել , այր գրգռել , նախանձը մոլորել , դաւաճաններ եղծել եւ արգելքներ տապալել , իմ յատուկ գործս պիտի ըլլայ ։ Իսկ դուք , Տէր իմ , իմ տունս գացէք , զինուորական հագուստ հագէք , յանձնարարական գիրն առէք եւ ձեր գրպանները ոսկիով լեցուցէք ։

ԿՈՄՍ. Ոսկին որու համար կուզես ։

ՖԻԳ. (Աշխուժով) Է՛հ , տէր Աստուած , ոսկի , ոսկի պէտք է . այս է ամէն տեսակ մեքենայութեան շարժիչը եւ ոգին ։

ԿՈՄՍ. Մի բարկանար Ֆիկարօ . շատ մը ոսկի պիտի առնեմ հետս ։

ՖԻԳ. (Երթալով) Տէր իմ քիչ ժամանակէ զձեզ կուգամ գտնելու ։

ԿՈՄՍ. Ֆիկարօ ։

ՖԻԳ. Ի՞նչ կը հրամայէք ։

ԿՈՄՍ. Կիտարդ ո՞ւր կը ձգես ։

ՖԻԳ. (Կը դառնայ) Խելքս գլխէս ցնդեր է . նայէ կիտարս մոռնալու էի ։ (Գնալով) ։

ԿՈՄՍ. Բայց խանութդ ո՞ւր է , չըսիր թշուառական ։

ՖԻԳ. (Դառնալով) Է՛հ , մի չգիտեր խանութս ։ Ասկից քանի մը քայլ անդին է . կապոյտ ներկուած , կապարագոյն ապակիով . նշանակն է վեր ցցուած երեք թիակ , ձեռք մը՝ մէջ տեղը աչք մը նկարագրուած ։ (Կը ձգէ կ'երթայ) ։

# ԱՐԱՐ ԵՐԿՐՈՐԴ

(Տեսարանը Վարդուհիին սենեակը կըներկայէ . ներքին դին եղած պատուհանը վանդակով մը գոցուած է) ։

## ՏԵՍԻԼ Ա.

ՎԱՐԴՈՒՀԻ (Առանձին, մոմ 'ի ձեռին. սեղանին վրայէն թուղթ կ'առնու եւ կ'սկսի գրել) ։

ՎԱՐԴ. Մարցելինան հիւանդ եւ բոլոր սպասաւորք տան մէջ զբաղած են . ուստի նամակ գրելս մարդ չի կրնար տեսնել . բայց ի՞նչ կըսեմ . թերեւս այս պատերն ալ աչք եւ ականջ ունին , եւ կամ իմ Արկուսս (2) չար վհուկ մը կը սպասէ որ ամէն բան մէկու ականջը կը հասցունէ . Վասն զի ամենաթեթեւ խօսքս եւ եւ շարժուածքս ներքին դիտաւորութիւնս խելքին կը թափանցէ . . . ահ , Լինտոր . (Նամակը կը գծէ) Գոցենք , շուտ գոցենք այս նամակը , թէեւ չգիտեմ թէ Երբ եւ որու ձեռ-

ռօք դանի սեղը պիտի հասցունեմ․ Վանդակին ետեւէն քիչ մը առաջ անձկանօք կը դիտէի որ նա Ֆիկարօ սափրիչին հետ երկար բարակ կը խօսէր ։ Սա Ֆիկարօն լաւ մարդ մըն է եւ երբեմն ինծի կարեկից եղած է ։ Եթէ կարելի ըլլար հետը անգամ մը տեսնուիլ ուրիշ բան չէի ուզեր։

## ՏԵՍԻԼ Բ.

### ՎԱՐԴՈՒՀԻ , ՖԻԿԱՐՕ

ՎԱՐԴ. Վա՜յ , պարոն Ֆիկարօ․ որչափ երջանիկ եմ զքեզ տեսնելուս ։

ՖԻԿ. Այնպէս օրիորդ , ինչպէս է ձեր առողջութիւնը ։

ՎԱՐԴ. Այնքան աղէկ չէ , պարոն Ֆիկարօ , ձանձրութենէ կը հալիմ ու կը մաշիմ։

ՖԻԿ. Կը հաւատամ․ ձանձրութիւնը միմիայն յիմարները կը գիրցունէ ։

ՎԱՐԴ. Բայց քիչ մը առաջ վարը որու հետ այնքան տաք տաք կը խօսակցէիր․ ձեր խօսքը չէի լսեր իրաւ , սակայն . . . ։

ՖԻԿ. Այո , ազգականս երիտասարդի՛ մը հետ , որ մեծ մեծ յոյսեր կուտայ եւ ինքը 'ի բնէ ուշիմ , զգայուն , տաղանդաւոր եւ վայելչագեղ պատանի մըն է ։

ՎԱՐԴ. Արդարեւ շատ գեղեցիկ է․ իսկ անունը . . . ։

ՖԻԿ. Անունը Լէնտոր է․ ունեւոր չէ իրաւ , բայց եթէ Մատրիտէն շըտապաւ չմեկնէր շահաւոր պաշտօն մը կրնար ձեռք ձգել ։

ՎԱՐԴ. (Վառվռուն կերպով) Ո՛հ , պարոն Ֆիկարօ , անոր համար գործք պակաս չէ․ այնպիսի պատանի մը անգործ եւ անծանօթ մնալու համար սահմանուած չէ ։

ՖԻԿ. (Մեկուսի) Նենկեղու վրայ է գործը։ (Բարձր) Ի՞նչ օգուտ․ մեծ պակասութիւն մը ունի որ իր յառաջդիմութեան միշտ խոչնդոտն պիտի կանգնի ։

ՎԱՐԴ. Պակասութիւն մ՞ի․ պարոն Ֆիկարօ , ստոյգ է բնաւ ։

ՖԻԿ. Այո , սիրահարած է ։

ՎԱՐԴ. Սիրահար է․ եւ մի՞թէ այս պակասութիւն մըն է ։

ՖԻԿ. Իր անբաղդութեան նկատմամբ պակասութիւն է ։

ՎԱՐԴ. Ա՜հ , քանի անիրաւ է բաղդը ։ Բայց արդեօք իր սիրուհւոյն անունը յայտնեց քեզ․ աններելի հետաքրքրութեամբ մը կը փափաքէի . . . ։

ՖԻԿ. Օրիորդ , թերեւս այսպիսի ծածուկ բան մը ամենուն յայտնեմ , բայց ձեզի , ոչ երբէք ։

ՎԱՐԴ. (Աշխուժով) Ինչո՞ւ համար , պարոն Ֆիկարօ․ ես ծածկապահ եմ , պատանին քու ազգականդ է․ ուստի անոր լաւութեան ցանկացող եմ գիտես . . . ուրեմն , ըսէ նայիմ ։

ՖԻԿ. (Անոր երեսը պինդ պինդ նայելով) Լաւ ուրեմն , աչքիդ առջեւը բերէք ամենասիրուն փոքրիկ օրիորդ մը , անուշ , քնքուշ , զուարթիկ , թարմ , ախորժելի , ոտուըները մանր մանր , հասակը շնորհալի , թեւերը կլորիկ , բերանը վարդագոյն , եւ հապա այն ձեռնի այէս մատուըները , այն ակռաները , այն հրաշալի աչուըները . . . ։

ԿԱՐԴ. Այդ աղջիկը արդեօք այս քաղաքս կը բնակի։

ՖԻԿ. Այս թաղիս մէջ։

ԿԱՐԴ. Կարելի է այս փողոցին մէջ։

ՖԻԿ. Ինծմէ քանի մը քայլ հեռու կը գտնուի։

ԿԱՐԴ. Ա՛հ, ինչ զմայլելի բան... աշխատանքիդ համար. հիմա այս օրիորդին անունն է....

ՖԻԿ. Ես դեռ անունը չի տուի։

ԿԱՐԴ. (Եռանդով) Միայնակ այդ ծառայար պարոն Ֆիկարօ, պիտի ըսեմ. չուտ, չուտ... թէ որ մէկը հիմա վրայ հասնի պիտի չի կրնամ իմանալ....

ՖԻԿ. Անունը անպատճառ իմանալ կուզէք, լաւ ուրեմն, այն օրիորդն է... դաստիարակին աշակերտուհին։

ԿԱՐԴ. Աշակերտուհին։

ՖԻԿ. Այո, օրիորդ, պարոն Բարթալին աշակերտուհին։

ԿԱՐԴ. (Այլայլութեամբ) Ա՛հ, Պարոն Ֆիկարօ... չեմ հաւատար ըսածիդ։

ՖԻԿ. Թող ինք անձամբ գայ եւ ըսածս հաստատէ, ինչպէս որ կը բաղձայ։

ԿԱՐԴ. Պարոն Ֆիկարօ, սիրտս թունդ կը հանես։

ՖԻԿ. Սիրտդ թունդ կը հանեմ. Օրիորդ, կարծէի թէ աւելի արատես էք. ամեն բան լաւ կշռեցէք. երբ մարդս դէշութեան մը փախը կզգայ 'ի հարկէ վախին պատճառած դէշութեանն ալ կզգայ, ես ալ գիտցիք որ մինչեւ վաղուան օրս դձեզ հրաշքող յանձներէն ազատած եմ։

ԿԱՐԴ. Ա՛հ, թէ որ գիս կը սիրէ պէտք է որ հանդարտ կենայ եւ փորձով համոզէ։

ՖԻԿ. Ո՛հ, ազնիւ օրիորդ, միթէ սէրն ու հանդարտութիւնը մի եւ նոյն սրտին մէջ կրնան ապրիլ. այս դարուս պատանիները այնքան թշուառ են որ կամ պէտք է ընտրեն սէրը առանց հանդարտութեան կամ հանդարտութիւնը առանց սիրոյ։

ԿԱՐԴ. (Աչուըները վար) Կերեւի թէ հանդարտութիւնը առանց սիրոյ....

ՖԻԿ. Այո, շատ տաղտկալի բան մըն է, արդարեւ ինծ կը թուի որ առանց հանդարտութեան սէրը աւելի չնորհալի է... ու թէ որ կին ըլլայի....

ԿԱՐԴ. (Շփոթութեամբ) Այս ստոյգ է որ օրիորդ մը չի կրնար արգիլել բարեսիրտ մարդ մը զինքը յարգելու։

ՖԻԿ. Ահա անոր համար ազգականս ալ չափազանց կը յարգէ զձեզ։

ԿԱՐԴ. Բայց, պարոն Ֆիկարօ, թէ որ եղեր անխոհեմութիւն մը ընէ, մեր կորստեան պատճառ պիտի ըլլայ։

ՖԻԿ. (Մեկուսի) Մեր կորստեան։ (Բարձր) դէչ չըլլար կարծեմ թէ որ գրով մը պատուիրէք անոր... ծը-չափ մեծ, մեծ է նամակի մը զօրութիւնը։

ԿԱՐԴ. (Անոր կը յանձնէ սրբէն գըրած գիրը) Այս գիրս նորէն գրելու ժամանակ չունիմ, բայց զայն անոր յանձնելու ատենդ դուն բերանացի ըսէ իմ կողմէս... չի մոռնաս ըսելու... (Ակ—նք կը դնէ)։

ՖԻԿ. Ձայն ձոյն չկայ. Օրիորդ։

ԿԱՐԴ. Թէ մի միայն մաքուր բարեկամութեամբ մը վառուած եմ։

ՖԻԿ. Տարակոյս մի կայ, 'ի հարկէ սէրը ուրիշ լեզու ունի։

ՎԱՐԴ. Խմացի՛ր, լոկ բարեկամութիւնէ է ըրածս: Մինակ կը վախնամ որ չելնէ դժուարութիւններէ վհատելով...:

ՏԻԿ. Այո՛, չըքնաղ հուր մըն է: Սակայն լաւ յիշեցէք տիրուհիս որ հովը հոս կայծ մը մարելու տեղ՝ անդին աւագին կայծակներ կարծարծէ, ահա մենք ալ այս կայծակներն ենք, թէ որ սիրոյ խօսքը միայն բանամ՝ այնպիսի փայլակներ կարձակէ բարեկամս, որ կարծես թէ ես ալ այն ջերմութիւնէն պիտի բորբոքիմ. ես որ այնպիսի կրակներ կարհամարհեմ:

ՎԱՐԴ. Ա՛հ, դաստիարակիս ձայնն է: Թէ որ զքեզ հոս գտնէ... շուտ անդին խուցը անցի՛ր եւ կամացուկ մը վար իջի՛ր:

ՏԻԿ. Սիրտդ հանդարտ պահէ: (Նամակը ցոյց տալով մեկուսի) Այս նամակը ամեն բանի տեղ պիտի բռնէ: (Կելթայ):

## ՏԵՍԻԼ Գ.

### ՎԱՐԴՈՒՀԻ

ՎԱՐԴ. Մինչեւ դուրս ելլելը հոգիս բերանս պիտի գայ... որչափ կը սիրեմ սա բարեմիտ Ֆլիկարոն, տասուգին ուղիղ մարդ եւ բարի ազգական մըն է: Ա՛հ, ահա իմ բանաւորս հասաւ, շուտ գործս ձեռք առնեմ: (Մօմը կը մարէ և բռնած գործը առնելով կը նստի):

## ՏԵՍԻԼ Դ.

### ԲԱՐԹԱՄ, ՎԱՐԴՈՒՀԻ

ԲԱՐԹ. (Բարկութեամբ) Ա՛խ, անէծք, անէծք իջնէ սա ապիրատ եւ անօրէն Ֆլիկարոյին գլխին, այս ինչ փորձանք է. միթէ ասոքս անէծն դուրս հանելու չեմ որ այսպէս 'ի դարձիս միշտ...:

ՎԱՐԴ. Պարոն, ինչու այսպէս բարկացեր ես:

ԲԱՐԹ. Այն անիծեալ սափրիչն է պատճառը, որ ակնթարթի մը մէջ բոլոր ապառաժներս անձարակ ըրեր ձգեր է եւ տանս անկելանոց դարձուցեր է. Բռներ Արթուշին թմրեցուցիչ դեղ մը, եւ Նամշուշին բռնդգացուցիչ ջուր մը տուեր է, Մարինային ոտքէն ալ արիւն առեր է. հապա սա ջորիէս ինչ կուզէ... խեղճ անասունին աչքէն կուրցած աչքերուն վրայ ինչ դնէ աղէկ, ահագին ապեղանի մը: Թշուառականը իր բոլոր Տիգըկը թափէ որ հաշիւը մեծցունէ եւ ինձ ունեցած հարիւր ոսկի պարտքը դեղերովը փոխարինէ: Թող, թող անդդամը բերէ իր հաշիւը: Այս ինչ է. տանս մէջ մանող ելնող յայտնի չէ եւ կարծես թէ հասարակաց հրապարակ մը դարձեր է:

ՎԱՐԴ. Բայց, պարոն, քեզմէ զատ ո՞վ կարող է ներս մտնել։

ԲԱՐԹ. Լաւագոյն է առանց պատճառի կասկածիլ, քան թէ առանց զգուշութեան վտանգի մէջ գտնել։ Այս կողմերս յանդուգն եւ ձեռներէց մարդիկներէ զատ ինչ կը տեսնես... դեռ այս առտու ես վար չինջած կամացուկ մը երգէր թուղթը առին չարաբէն։ Ա՛հ, ես կասկած....

ՎԱՐԴ. Է՛հ. անանշան բանի մը որչափ կարեւորութիւն տալու կախարդես, ո՛ գիտէ, կարելի է հովը կամ պատահմամբ անցնող մը առաւ տարաւ այն թուղթը։

ԲԱՐԹ. Հովը կամ անցնող մը... Տիրուհիս, ոչ հով կայ աշխարհիս երեսը եւ ոչ պատահական անցնող. հապա միշտ մարդուն մէկը գաղտնի տեղ մը կը պահուըտի որ կնկան մը ձեռքէն կամաւ ինկած թղթերը ժողվէ առնէ։

ՎԱՐԴ. Պարոն, կամաւ...

ԲԱՐԹ. Այո՛, կամաւ, տիրուհիս։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Ա՛հ, չարամիտ ծեր։

ԲԱՐԹ. Բայց այսուհետեւ այսպիսի դէպք մը չի պատահիր եւ հիմա անմիջապէս պիտի երթամ սա վանդակը գամել տալու։

ՎԱՐԴ. Աւելի աղէկ կընես պատուհաններուն տեղ պատ մը քաշես. բանտի եւ գբի մէջ եղած տարբերութիւնը մեծ բան մըն է։

ԲԱՐԹ. Աղէկ ըսիր, կարծեմ սա փողոցին վրայի պատուհանին տեղ պատ քաշելը գէշ չըլլար... բայց գոնէ սա սափրիչը սենեակդ չի մըտաւ, յուսամ։

ՎԱՐԴ. Ի՞նչ, անո՞րմ ալ կասկած ունիս։

ԲԱՐԹ. Ինչու չէ։

ՎԱՐԴ. Որչափ վայելուչ են տուած պատասխաններդ։

ԲԱՐԹ. Թէ որ անգամ մը վստահութիւն ցուցնեմ, ապահով եմ որ խելօքն կին, բարեկամ եւ սպասաւոր զիս խաբելու համար կը դաւակցին.

ՎԱՐԴ. Ի՞նչ, միթէ չես կարծեր որ կին մը քիչ շատ առաքինական սկզբունք կրնայ ունենալ Ֆիկարոյի պէս մարդուն հրապուրանաց դէմ կենալու։

ԲԱՐԹ. Ո՞վ սատանան կրնայ խելք հասցնել կանանց այլանդակ խորհուրդներուն, եւ քանի՛ քանի առաքինի եւ սկզբանց տէր կանայք տեսեր եմ որ....

ՎԱՐԴ. (Բարկութեամբ) Բայց, պարոն, թէ որ անխտիր ամէն մարդ մեզի հաճելի է, ինչու համար ուրեմն դուն չափազանց անհաճոյ ես ինծի։

ԲԱՐԹ. (Ապշած) Ինչու համար... ինչու համար... սափրիչին վրայ ըրած հարցմունքիս պատասխանը չես տար։

ՎԱՐԴ. (Զայրացած) Պատասխան կուզես, լաւ. այն մարդը հոս եկաւ, զիս տեսաւ, հետս խօսեցաւ եւ կը խոստովանիմ նաեւ որ զինքը խիստ սիրուն գտայ... ալ հիմա գնա կատղութենէդ ճայթէ։ (Դուրս կ'ելնէ)։



## ՏԵՍԻԼ Ե.

ԲԱՐԹԱՄ

ԲԱՐԹ. Ա՛խ, ձեռքս տամ սա անիծից արմատ ապստամբները կը բզկտեմ. այն Երանդուհը, այն անիծեալ Արթունը, Արթո՛ւն.

## ՏԵՍԻԼ Զ.

ԲԱՐԹԱՄ, ԱՐԹՈՒՆ

ԱՐԹ. (Յօրանջելով և գրեթէ աչքերը գոց ներս կը մտնէ) Աա՜հ, ա՜հ, ա՜հ... ա՜հ.

ԲԱՐԹ. Ո՞ւր էիր դու անիծից ծնունդ, երբոր սա սափրիչը հոս եկաւ, ո՞ւր էիր.

ԱՐԹ. Պարոն, ես, աա՜հ, ա՜հ... ա՜հ... ա՜հ.

ԲԱՐԹ. Անտարակոյս չարութիւն մը հնարելու վրայ էիր, դուն զինքը չի տեսնիր.

ԱՐԹ. Այո, տեսայ. բայց որ ես հիւանդ եմ, եւ բանծը իրաւ էր կարծեմ, վասն զի բերանս բացաւ չգոցաւ եւ ահա բոլոր անդամներս ցաւ... ցաւ, աա՜հ, աա՜հ, ա՜հ, ա՜հ...

ԲԱՐԹ. (Անոր ձայնը կեղծելով) Աա՜հ, ա՜հ, ա՜հ, աա՜հ... բայց անպիտան Երանդուհը ո՞ւր է, առանց իմ հրամանիս սա խեղճ պատանին դեղելը անիրաւութիւն չէ՞ մի.

## ՏԵՍԻԼ Է.

Նախորդ անձինք, ԵՐԱՆԴՈՒՀԻ. (Ցուպ 'ի ձեռին, ծեր մարդու պէս կուզայ և շատ մը կը փռնգտայ)

ԱՐԹ. (Միշտ յօրանջելով) Երանդուհն.

ԲԱՐԹ. Քեզի փռնգտալը պիտի սավրեցունեմ.

ԵՐԱՆ. Ահա այս յիսուներրորդ անգամն է որ կը փռնգտամ... մէկ բոպէի մէջ յիսուն անգամ. (կը փռնգտայ) Ա՛հ, ոսկորներս խուրդ ու խաշ եղան.

ԲԱՐԹ. Ի՞նչ թշուառականներ, ձեզի կը հարցնեմ որ Վարդուհիին քով մարդ մը եկաւ. եւ չէք ըսեր որ այն հանած վարած սափրիչը...

ԱՐԹ. (Յօրանջելը շարունակելով) Եւ միթէ մարդու տեղ կը դնէք այն Ֆիկարօն, աա՜հ, ա, ա, ա՜հ...

ԲԱՐԹ. Գրաւ կը դնեմ որ սա անզգամը անոր հետ խօսքը մէկ ըրած է.

ԱՐԹ. (Խենդի պէս լալով) Ես... ես խօսքս մէկ ըրած ըլլամ....

ԵՐԱՆ. (փռնգտալով) Բայց, պարոն, արդարութիւն... արդարութիւ-

նը վերցնէ։

ԲԱՐԹ. Արդարութիւն, ձեզի պէս մարդոց համար արդարութիւն ինչ պէտք է։ Ես ձեր տէրն եմ, ես ինքս, եւ միշտ արդարութիւնը իմ կողմս է։

ՆՈՅԱՆ. (փնդփնալով) Բայց, Աստուած վկայ, երբ բանս ճշմարիտ է . . . .։

ԲԱՐԹ. Երբ բան մը ճերմակ է եւ չեմ ուզեր որ ճերմակ ըսուի, կը պնդեմ որ սեւ է. թէ որ ձեզի պէս սրիկայներու իրաւունք տանք, այն ատեն մեր իշխանութիւնը ուր անցնիլը կ'իմնէ։

ՆՈՅԱՆ. (փնդփնալով) Թէ որ այսպէս ամեն օր չար տանջանք պիտի քաշենք եւ գեհենին մէջ պիտի տապկուինք, աւելի աղէկ կըլլայ մեզի ճամբայ տաք։

ՆՈՅ. Եւ ինչպէս անգթաբար կը վարուիք ինծի պէս բարեսիրտ մարդու մը հետ։

ԲԱՐԹ. Ա՛լ, դուրս ել, բարեսիրտ մարդ. (Անոնց ըրածը ձեւացնելով) Այս ինչ է, մէկը երեսիս, բշխ, բշա, կը փնդփնայ. միւսը անդադար կը յօրանջէ։

ՆՈՅԱՆ. Այո, պարոն, հաւատար եղիք որ եթէ սա օրիորդը չըլլայ անհնար է հոս ժամ մը կենալ։ (փնդփնալով կերթայ)։

ԲԱՐԹ. Այն սատանայ Ֆիկարօն ինչ խղճալի վիճակի մէջ նետեր է սա սպասաւորներս, ամբողջ առանց քսակը բանալու պարտքը վճարել կուզէ։

ՏԵՍԻԼ Ը.

ԲԱՐԹԱՄ, ՎԱՍԻԼ, ՖԻԿԱՐՕ (Որ ներսը խուցը պահուըտած է եւ ատեն ատեն գլուխը դուրս կը հանէ մտիկ ընելու համար)

ԲԱՐԹ. Ա՛հ, պարոն Վասիլ, անշուշտ Վարդուհիին դաս տալու համար եկար։

ՎԱՍԻԼ. Հիմա կարեւոր խնդիրը այդ չէ. գաղտնի լուր մը իմացայ որ քեզի կը վերաբերի։ Ալմավիւան կոմսը այս քաղաքիս մէջն է։

ԲԱՐԹ. Ի՞նչ. Ալմավիւան կոմսը. ան որ մեր Վարդուհին Մատրիտի մէջ ամեն կողմ փնտռել տուաւ։

ՎԱՍԻԼ. Այո, մեծ հրապարակին օթեւանը իջեր է, եւ ամեն օր ծպտեալ դուրս կելլէ։

ԲԱՐԹ. Տարակոյս չկայ, մեծ հոգ մըն է այս ինծի. Հիմա ինչ ընենք։

ՎԱՍԻԼ. Թէ որ աննշան մարդ մը ըլլար ասկից հեռացնելը դիւրին էր։

ԲԱՐԹ. Ցերեկուն դիւրին էր, գիշերանց վերէն վար զինուած անոր դարանակալ կենալի . . . .

ՎԱՍԻԼ. Այո, գլխէդ ալ փորձանք մը կը բերէիր. Բայց մէկ հատիկ միջոց մը կայ. այս է անոր դէմ զրպարտութիւն մը նիւթել։

ԲԱՐԹ. Սուտ գիր վատանունութեամբ մարդէ մը ազատելու համար հնարքի միջոց մըն է առաջարկածդ։

ՎԱՍԻԼ. Ա՛հ, պարոն, դուն դեռ զրպարտութեան ուժը չես գիտեր, չես գիտեր թէ ինչ հրաշքներ կը գոր-

ծէ, ամենէն առաքինի մարդիկ անոր ոտքներէն հալի հալ կլլման ազատիլ։ Հաւատա ինծի որ չկայ չարութիւն մը, սուտութիւն մը, ոճիր մը, որքան անչափ, սոսկալի եւ անհեթեթ ըլլայ, որ մեծ քաղքի մը դատարկապորտ մարդոց մէջ վարպետութեամբ մը տարածուելով՝ ճշմարտութեան գոյն չառնու, եւ փառք Աստուծոյ, այնպիսի դիւրահաւան մարդիկ չեն պակսիր մեր քաղքին մէջ . . . Նախ կը լսես որ հեռուէն թեթեւ չչուկ մըն է կը փրթի, եւ ծիծաղան պէս, փոթորիկը չեկած՝ կը թռի, փոշին կուլէ, կամացուկ մը կը մրմնջէ, կը սահի, կանցնի. եւ անցնելու ատեն թունալից նետը կարձակէ։ Իսկոյն նոյն ձայնը ուրիշի մը բերանը կանցնի որ կամաց կամաց ու ճարպիկութեամբ մը կուգայ ականջէդ 'ի վար կը սահեցնէ. Արդէն չարութեան որմը լինալով արմատ կը բռնէ, կը ծլի, կը ուղոսկի, կը գալարի, չուանչ առնելով բերնէ բերան կայծակի պէս կը չըրջչըրջի։ Ու ահա յանկարծ հնչական զօրութեամբ մը գրգռութիւնը ճակատը բաց առաջ կը կանգնի, կը ուռչէ, կուռի, եւ արագ արագ կը ալանայ, կեռայ, կը տարածի, կը հնչակի, կը տիրապետէ, կը հրամայէ, կը գոռայ, կը պայթի եւ 'ի վերջոյ ընդհանուր աղաղակ մը, հասարակաց բարձրաձայն Ըռեւսոզը, ատելութեան եւ հալածանաց մէկ պարը կը դառնայ։ Ո՞վ կրնայ այնուհետեւ այս որոտնդոստ պատգամին դէմ կենալ։

ՊԱՐԹ. Բայց, պարոն Վասիլ, այդ ինչ բարբանջմունք է. իմ վիճակիս հետ ինչ յարաբերութիւն ունին քու երաժշտական կամացուկ, Ռուազ, պար, խօսքերդ։

ՎԱՍԻԼ. Ի՞նչ յարաբերութիւն, մարդս իր թշնամին վանելու համար ուրիշ տեղ բռածը պէտք է որ մենք հոս 'ի գործ դնենք անոր մօտենալը արգիլելու համար։

ՊԱՐԹ. Մօտենալը, բայց ես չէ թէ մօտենալուն պիտի սպասեմ, այլ մինչեւ որ Վարդուհին իմանայ թէ այնպիսի կոմս մը կայ աշխարհիս երեսը, ես անոր հետ պիտի կարգուիմ։

ՎԱՍԻԼ. Ուրեմն ժամանակ մի կորուսանէր։

ՊԱՐԹ. Բայց այս բանս քեզմէ կախում ունի, պարոն Վասիլ։ Միթէ արդէն այս գործին կարգադրութիւնը քեզի յանձնած չեմ։

ՎԱՍԻԼ. Այո՛ յանձնած ես, բայց ծախուց դուռը բանալու պէս. կսկսխս մռմռալ, եւ արդէն գիտես որ գործին ներդաշնակութեան համար ամկիին կատարեալ ձայնակցութիւնը հարկաւոր է, որպէս զի այսպիսի անհամեմատ ամուսնութեան, անիրաւ որոշման՝ եւ ապօրինաւոր հրամանի մը տարաձայնութիւնները փարատին։

ՊԱՐԹ. (Ստակ տալով) Թող քու խօսքդ ըլլայ, միայն թէ գործը վերջանայ։

ՎԱՍԻԼ. Ահա հիմա նայէ, աղուոր եւ գործածելի է հրամանդ, փողը ամեն բան կարգի կը մտնէ, մինակ աչքդ չորս բաց որ աշակերտուհիիդ ականջին բան մը չի փախնան։

ՊԱՐԹ. Այս մասին անհոգ եղիր, այս իրիկուն պիտի գամ։

ՎԱՍԻԼ. Չեմ յուսար, բոլոր օրը քու ամուսնական գործերովդ պիտի

զբաղիմ . չէ , մի՛ ապսպրէր զիս ։

ԲԱՐԹ. (Անոր կուղեկցի) Ուրեմն , երթաս բարեաւ ։

ՎԱՍԻԼ. Ի՞նչ ծանրութիւն կառնես . մի՛ դար , խնդրեմ ։

ԲԱՐԹ. Ոչ, ուրիշ բանի համար է գալս , աս տան դուռը պիտի կղպեմ ։

## ՏԵՍԻԼ Թ.

### ՖԻԿԱՐՕ (Խուցէն ելլալով)

ՖԻԿ. Օ՜հ, ինչ աղուոր զգուշութիւն . գոցէ , գոցէ տանդ դուռը , պարոն Բարթոլ, ես հիմայ այն դուռը կռնակի վրայ կոմսին պիտի բանամ ։ Ստուգիւ աս Վասիլը անըզգամին մէկն է , բայց աղէկն այն է որ աւելի ապուշ է քան թէ անըզգամ ։ Չգիտեր խեղճը որ զրպարտիչ մը աստիճանի , խօսքի եւ անունի տէր մարդ պէտք է ըլլայ որ զրպարտութիւնը աղմուկ հանէ , ներգործէ եւ բանէ ։ Բայց մտածէ անգամ մը , Վասիլ մը . թէ որ բամբասէ անգամ ո՛վ իրեն կը հաւատայ ։

## ՏԵՍԻԼ Ժ.

### ՎԱՐԴՈՒՀԻ, ՖԻԿԱՐՕ

ՎԱՐԴ. (Վազելով) Ինչ , տակաւին հոս ես , պարոն Ֆիկարօ ։

ՖԻԿ. Ձեր օգտին համար է , տիկին ։ Ձեր դաստիարակը եւ երաժիշտը կարծելով թէ մինակ են սկսան իրարու սիրտ բանալ եւ . . . ։

ՎԱՐԴ. Եւ դուն ալ անշուշտ մտիկ ըրիր ։ Բայց արդեօք գիտես որ ըրածդ գէշ բան է ։

ՖԻԿ. Ի՞նչ , ականջ կախելը . բայց ականջ չի կախած՝ ինչպէս կարելի է բան մը իմանալ ։ Քաջ գիտցիք որ դաստիարակնիդ ձեզի հետ կարգուելու կը պատրաստուի ։

ՎԱՐԴ. Ահ , Տէր Աստուած ։

ՖԻԿ. Մի՛ վախնաք , անոր գլխին այնքան գործք պիտի բանամ , որ այդ գործին մտածելու ժամանակ պիտի չունենայ ։

ՎԱՐԴ. Ահա նորէն կուգայ , դուրս , փոքրիկ սանդուղէն դուրս ելիր ։ Ահ ու դողէս պիտի մեռնիմ ։ (Ֆիկարօն կը փախչի)։

## ՏԵՍԻԼ ԺԱ.

### ԲԱՐԹԱՄ, ՎԱՐԴՈՒՀԻ

ՎԱՐԴ. Պարոն, կարծեմ թէ քիչ մը առաջ հոս մէկուն հետ խօսքի բռնուեր էիր ։

ԲԱՐԹ. Այո, պարոնն՝ ասկին էր այն, եւ զինքը մինչեւ դուռը տարի ձըգեցի, ան ալ յատուկ գիտնամաք մը ։ Անշուշտ կուզէիր որ այն անձը Ֆիկարօն ըլլար ։

ՎԱՐԴ. Յիրաւի ինծի համար նոյն բանը ըսել է ։

ԲԱՐԹ. Շատ կը փափաքէի գիտնալ որ այն սափրիչը ինչ կարեւոր խօսելիք ունէր քեզի ։

ՎԱՐԴ. Ճշմարիտը կուզես . Մարինային վիճակին վրայ խօսեցաւ հետս եւ ըսաւ որ ծանր հիւանդ է ։

ԲԱՐԹ. Մարինային վիճակը, ես գրաւ կը դնեմ որ քեզի նամակ մը յանձնելու պաշտօնով հոս եկած էր ։

ՎԱՐԴ. Եւ խնդրեմ, ով ինծի նամակ գրած ունի երբէք ։

ԲԱՐԹ. Ո՞վ, այնպիսի մէկը՝ որուն անունը միշտ կը պահեն կանայք ։ Ո՞ գիտէ, թերեւս պատուհանէն վար ինկած գրին պատասխանը առիր ։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Ինչպէս ալ ամեն բան կը գուշակէ ։ (Բարձր) Թէ որ ըսածդ ճշմարիտ ըլլար քեզի կը վայելէր ։

ԲԱՐԹ. (Վարդուհիին մատուըները կը նայի) Այո, ճշմարիտ է . գիր գրած ես ։

ՎԱՐԴ. (Շփոթութեամբ) Արդարեւ ծիծաղելի բան մը կըլլար թէ որ չըրածս բռնի ինծի ըրի ըսել տայիր ։

ԲԱՐԹ. (Անոր աջ ձեռքը բռնելով) Ջէ, բռնութիւն պէտք չէ . սա մելանոտ մատերդ բաւական կը վկայեն ։ Հէյ, հէյ, նենգամիտ տիրուհիս, հիմա նայինք որ սա ալ կարկտան կը տանի ։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Անիծեալ մարդ ։

ԲԱՐԹ (Միշտ անոր ձեռքը բռնած) Կին մը ինքզինքը միշտ ապահովութեան մէջ կը կարծէ երբ կը նայի որ մինակ է ։

ՎԱՐԴ. Ե՛հ, այո, այնպէս է . . . ինչ աղուոր փաստ . . . է, լմնցուր, պարոն, թեւս պիտի փրցունես ։ Ճըրագը սրբելու ատենս մատս այրեցի եւ լամծիս պէս, մելանի մէջ թաթխեցի որ այրածը անցնի ։

ԲԱՐԹ. Մելանին մէջ թաթխեցիր հա ։ Լաւ, հիմա նայինք որ ըսածիդ ուրիշ վկայ մը ունիս ։ Այս վկայն սա տետրակն է, որ հինգ սար թերթ ունէր, վասն զի ամեն առտու կը համրեմ, եւ այսօր ալ համրեցի . . . ։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Ա՜խ, անպիտան մարդ . . . ։

ԲԱՐԹ. (Կը համրէ) Երեք, չորս, հինգ . . . ։

ՎԱՐԴ. Վեցերորդը . . . ։

ԲԱՐԹ. Այո, վեցերորդը պակսած է ։

ՎԱՐԴ. (Աչուըները վար առնելով) Ստոյգ է . Ֆիկարօյին աղուն շաքարեղէն խրկեցի այն թերթին մէջ փաթթելով ։

ԲԱՐԹ. Ֆիկարօյին աղուն . հապա գրիչը որ նոր կտրուած եւ մաքուր էր, ինչու համար այսպէս սեւցեր է, արդեօք Ֆիկարօյին աղուն հասցէն գրեցիր վրան ։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Այս մարդուն սրտին նախանձը բնածին է անշուշտ ... (Բարձր) Քեզի համար բանած քանկիս ծաղիկը ատրուելուն՝ այն գրիչով գծագրեցի։

ԲԱՐԹ. Օ՛հ, ինչ գեղեցիկ խծիկ ; գոնէ մի կարմրիր աղջիկս որ ետեւէ ետեւ կարկատած ոտտերդ կցցեմ, բայց տակաւին դէմքդ ալ կեղծելու արհեստին մէջ համբակ ես։

ՎԱՐԴ. Բայց, պարոն, իմ անմեղ գործերս այսպէս չար մտքի տանելդ մի՛ որ լաւ, անօթահար կը կարմրիմ։

ԲԱՐԹ. Այո՛, այո՛, խրատուանք ունիս։ Մատդ այրեր, մեկյանի մէջ թաթխեր, պզտի Յիկարոյին թղթի մէջ չաքար խրկեր, քանկիս ծաղիկը գծագրեր ես, առնք չափազանց անմեղ բաներ են։ Բայց այն տես որ մէկ հատիկ դէպք մը պատահելու համար որչափ ստա ստի վրայ կը դիզես ... անշուշտ ինքնիրենդ ըսած ես. «Ահա մեր մինակ եմ, զիս տեսնող չկայ, ուրեմն ազատիս պէս ստտեր կրնամ հիւսել» բայց ինչ օգուտ, մատդ ծայրը սեւ, գրիչը մրոտած, եւ թուղթը պակաս կեցած են, եւ այսպիսի մանր մունր բաներու միտ չես դրեր։ Ինչ եւ իցէ, տիրուհիս, թէ որ անգամ մը քաղաքը իջնեմ եւ քանի մը պատոյտ ընեմ, ամեն բան կիմանամ։

## ՏԵՍԻՆ ԺԲ.

ԿՈՄՍ, ԲԱՐԹԱՄ, ՎԱՐԴՈՒՀԻ. (կոմսը հեծելազօրի հագուստ հագած եւ կէս մը գինով կերեւի)

ԲԱՐԹ. Այս մարդս ծամկէց եղած զօրականն մըն է. ներս մտիր, ներս։

ԿՈՄՍ. (Երթալով դէպ 'ի Վարդուհին կը մօտենայ) Կամնայք, ձեր երկուքէն մէկ է Պասմանամ բժիշկը։ (Յած ձայնով առ Վարդուհի) Ես Լէնսորին եմ։

ԲԱՐԹ. Բարթամ, ըսել կուզէ կարծեմ։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Լէնսորի անունն ասուա։

ԿՈՄՍ. Պասմանամ եղեր է կամ Մարքիթան, երկուքն ալ հոգս չէ. ես հասկընալ կուզեմ միայն թէ որուն ուղղուած է ... (Վարդուհիին թուղթ մը ցուցնելով) Ահա սա գիրս ...։

ԲԱՐԹ. Ի՞նչ, այն գիրը ինծի ուղղուած է։ Վարդուհի, ներս մտիր, ըսի. կարծեմ թէ աս մարդը խըմած է։

ՎԱՐԴ. Ահա ասոր համար դրքեզ մինակ թողուլ չեմ ուզեր. կինկան մը ներկայութիւնը միշտ մարդու անկրթութիւն կազդէ։

ԲԱՐԹ. Գնա՛ ներս մտիր, ես վախկոտ չեմ։

## ՏԵՍԻԼ ԺԳ.

### ԿՈՄՍ, ԲԱՐԹԱՄ

ԿՈՄՍ. Ա՛հ, ա՜հ, ինծի տրուած նկարագրին վրայ անմիջապէս զքեզ ճանչցայ։

ԲԱՐԹ. (Առ կոմսն որ նամակը կը ծալէ) Ի՞նչ է գրպանիդ մէջ պահածդ։

ԿՈՄՍ. Կամաւ պահածս կը պահեմ որ ինչ ըլլալը չի հասկընաս։

ԲԱՐԹ. Անշուշտ իմ նկարագիրս է։ Այս զօրականներն ալ կարծեն թէ միշտ պատերազմի դաշտին մէջն են։

ԿՈՄՍ. Իսկ միթէ դու կը կարծես թէ դժուարին բան մըն է քու նկարագիրդ ընելը, ահա պատկերդ։

Գլուխն է կունտ, գագաթն շարժուն
Աչուշ նայուածք, պապպաղ ակռանք
Վայրենի դէմք, թանձր հասակ
Ուսին մէկը վեր բարձրացած,
Գոյն չարաւի, քիթ տափարակ
Սրունք դարձած, ձայն ռնգական,
Որկոր անկուշտ, բժիշկ անման։

ԲԱՐԹ. Ի՞նչ ըսել կուզես, պարոն, գիս նախատելու համար հոս եկար. իսկոյն, շուտ, տանէս դուրս ելիր։

ԿՈՄՍ. Տունէն դուրս ելնեմ. ա, ա, լեզուդ քեզ քաշէ, կարդալ գիտես... պարոն բժիշկ։

ԲԱՐԹ. Ահա ուրիշ տարօրէն հարցմունք մըն ալ.

ԿՈՄՍ. Գժարդ չի գայ. բայց ես ալ քեզի չափ բժիշկ եմ....

ԲԱՐԹ. Ի՞նչ տեսակ բժիշկ.

ԿՈՄՍ. Միթէ ես զօրագնդին ձիերուն բժիշկը չեմ. եւ ահա այս պատճառաւ է որ արհեստակցիս հետ բնակելու համար գիս հոս խըրկեցին։

ԲԱՐԹ. Ի՞նչպէս կը յանդգնիս պայտար մը բժիշկի մը հետ բաղդատել։

ԿՈՄՍ. (Առանց երգելու)։

Չէ, բժիշկ իմ, ես չեմ ըսեր
Որ մեր արհեստն է գեր 'ի վեր
Քան Հիպոկրատին եւ իր գնդին.

(Երգելով)

Արհեստակից, ձեր գիտութեան
Յաջողուածքն է ընդհանուր.
Թէ որ ցաւի չզանէ դարման
Գէթ հիւանդը հոս չի թողուր։

Հիմայ հաճեցա՞ր բարեկիս.

ԲԱՐԹ. Միթէ կը վայլէ՞ քեզի, տգէտ պայտար, որ աշխարհիս ամէն արհեստներէն գերագոյնը եւ օգտակարագոյնը այսպէս վար զարնես։

ԿՈՄՍ. Այո, այդ արհեստը բանողներուն միայն օգտակար է։

ԲԱՐԹ. Բացարձակ կերեւի որ մինակ ձիերու հետ խօսելու վարժեր ես։

ԿՈՄՍ. Ձիերու հետ. կը սխալիս, բժիշկ. Պայտար մը առանց ձիերու հետ խօսելու կը բժշկէ զանոնք, եւ ընդհակառակն բժիշկ մը իր հիւանդին հետ շատ կը խօսի....

ԲԱՐԹ. Առանց բժշկելու, այնպէս չէ՞.

ԿՈՄՍ. Դու բերնովդ անհակը խոստովանիս.

ԲԱՐԹ. Աս անիծեալ գինովը ո՞ր սատանան խրկեց հոս։

ԿՈՄՍ. Կարծեմ թէ յիշողներ կարձակես, պարոն բժիշկ։

ԲԱՐԹ. Վերջապէս ինչ կուզես. ինչ է միտքդ։

ԿՈՄՍ. (Սաստիկ բարկութիւն կեղծելով) Ի՞նչ կուզեմ. ինչու կը բարբաջիս. չհասկցար ուզածս ինչ է :

## ՏԵՍԻԼ ԺԴ.

### ՎԱՐԴՈՒՀԻ, ԿՈՄՍ, ԲԱՐԹԱՄ

ՎԱՐԴ. (Վռդելով) Պարոն գինուոր, կաղաչեմ, մի բարկանար. (Առ Բարթամ) Եւ դու պարոն, անուշութեամբ խօսէ անոր հետ. չես տեսներ որ խելքը գլուխը չէ. . . .

ԿՈՄՍ. Իրաւունք ունիս. խելքը գլուխը չէ. բայց մենք ալ անբան չենք. Ես մարդավար, դու գեղեցիկ, աւելէ աւելի ինչ կուզեմ. Ճշմարիտը ըսելով քեզմէ զատ ուրիշի հետ չեմ ուզեր խօսիլ.

ՎԱՐԴ. Ի՞նչ կրնամ ընել, Պարոն գինուոր, քու օգտիդ համար.

ԿՈՄՍ. Զնչին բան մ'է ուզածս, իմ սիրունս. Բայց թէ որ խօսքերս քիչ մը մութ են. . . .

ՎԱՐԴ. Ես կրնամ անոնց միտքը թափանձել.

ԿՈՄՍ. (Նամակը ցոյց տալով) Զէ, նամակիս մէջ ինչ որ գրուեր է, այն կուզեմ. . . խնդիրը աս է, պատուոյս վրայ կերդնում որ այս իրիկուն զիս այս տեղ պատսպարելու ճար մը գտնէք.

ԲԱՐԹ. Մինակ այս է խնդիրդ.

ԿՈՄՍ. Աւելէ աւելին չեմ ուզեր. Ահաւասիկ մեր զօրապետին գրած նամակը.

ԲԱՐԹ. Նայինք. (Կոմսը Վարդուհիին տալիք նամակը կը պահէ և ուրիշ մը կը յանձնէ. Բարթամ կը կարդայ) « Բարթամ բժիշկը պէտք է որ ընդունի, կերակրէ, պատսպարէ եւ անկողին մը տայ. . . » .

ԿՈՄՍ. (Շեշտելով) Այո՛, անկողին մը տայ.

ԲԱՐԹ. « Մինակ մէկ գիշերուան համար, Լէնատր անուն անձը, հեծելազօր գնդին զօրականը. . . » .

ՎԱՐԴ. Այո՛, նոյն ինքն է, ինքն է.

ԲԱՐԹ. (Աշխուժութեամբ առ Վարդուհի) Ի՞նչ ունիս, ինչ կայ

ԿՈՄՍ. Հիմա ինչպէս եղաւ, իրաւունք չունիմ, պարոն Պասմնամ.

ԲԱՐԹ. Կարծես թէ աս մարդս անունս ամէն կերպով այլակերպելու կախորժի. Սատանային ծակը մտիր, Պասմնամ Մարի-թան դրան ես. Կորսիր, գնա ըսէ տիրոջդ, ան լիրբ զօրապետին որ այսուհետեւ տանս մէջ զօրականներ պատսպարելու պաշտօնէն ազատ եմ.

ԿՈՄՍ. (Մեկուսի) Ո՛Տէր, ինչ անպատեհութիւն.

ԲԱՐԹ. Հա՛, հա՛, պարոն, այդ խօսքիս վրայ սկսար չփոթիլ եւ սթափիլ, բայց անմիջապէս դուրս ելիր նայիմ.

ԿՈՄՍ. (Մեկուսի) Մաղ մնաց ինքզինքս պիտի մատնէի. (Բարձր) Դուրս ելնեմ, թէ որ զօրականներ պատսպարելէն ազատ ես, կարծեմ թէ մարդավարութեամբ վարուելու պարտաւորութենէ ազատ չես. Դուրս ելնեմ հա. ցուցըր նայիմ արտօնա-

գիրդ․ Թէեւ կարդալ չգիտեմ, բայց․․․։

ԲԱՐԹ․ Այս մասին ապահով եղիր, արտօնագիրս ահա սա գզրոցին մէջն է։

ԿՈՄՍ․ (Նա դէպ 'ի գզրոցը երթալու ատեն, առանց տեղէն շարժելու Վարդուհիին կըսէ) Ահ, գեղանիդ իմ Վարդուհի։

ՎԱՐԴ․ Լէնտոր, յիրաւի դո՞ւն ես

ԿՈՄՍ․ Գոնէ՛ սա նամակը առէ՛ք։

ՎԱՐԴ․ Զգո՛յշ եղիր․ աչքը մեր վրայ է։

ԿՈՄՍ․ Թաշկինակնիդ հանեցէք նամակը գետին պիտի ձգեմ, վերցուցէք։ (կը մօտենայ)։

ԲԱՐԹ․ Մի՛ արտորար, հանդարտ, հանդարտ կեցիր, նենգամիտ զինուոր, չեմ ախորժիր որ իմ կնկանս այնքան մօտէն նայիս։

ԿՈՄՍ․ Ի՞նչ, այս քու կի՞նդ է։

ԲԱՐԹ․ Եւ ինչո՞ւ կը զարմանաս։

ԿՈՄՍ․ Ես կարծէի թէ նա թոռանդ թոռին թոռն է, անոր եւ քու մէջերդ քանի մը դարեր անցած են անշուշտ։

ԲԱՐԹ․ (Մագաղաթ մը կը կարդայ) «Մեզի տրուած արժանահաւատ վկայութեան վրայ․․․»։

ԿՈՄՍ․ (Ձեռօքը մագաղաթին զարնելով մինչեւ ձեղունը կը նետէ) Միթէ ես այսպիսի զրաբանութիւններ մտիկ ընելու գլուխ ունիմ․․․

ԲԱՐԹ․ Գիտե՞ս արդեօք, պարոն զինուոր՝ որ եթէ սպասաւորներս կանչեմ եւ զքեզ աղէկ մը թրջել տամ, անդին է։

ԿՈՄՍ․ Ի՞նչ, կռիւ, պատերազմ կուզէ՞ք սիրտս․ ահ, սիրով պատերազմինք․ մն 'ի գէն եւ 'ի հուր․ այս է իմ արհեստս․ (Գօտին խոթած ատրճանակը ցոյց տալով) Առով բերնիդ չափը պիտի տամ։ Տիրուհիս, պատերազմ տեսած էք երբէք։

ՎԱՐԴ․ Ձեմ տեսած, եւ չեմ ուզեր տեսնել։

ԿՈՄՍ․ Բայց քան զպատերազմ ի՞նչ աղուոր բան կայ։ Նախ՝ երեւակայեցէք, (Բժիշկը հրելով) երեւակայեցէք որ թշնամին փոսին մէկ կողմն է, եւ միւս կողմը դաշնակից բանակը։ (Վարդուհիին նամակը ցուցնելով) Հանեցէք, հանեցէք թաշկինակնիդ․ (Ոտքով կը զարնէ) Ահա այս է փոսը․ յայտնի կերեւի։ (Վարդուհին թաշկինակը կը հանէ, կոմսն ալ գիրը գետին կը նետէ)։

ԲԱՐԹ․ Է՛հ, հէ՜․․․։

ԿՈՄՍ․ (Գիրը գետնէն կառնու ու կըսէ) Վա՜յ․․․ ես ալ իմ արհեստիս գաղտնիքը ձեզի պիտի սորվեցունէի․․․ այս ի՞նչ խոհեմ տիկին է․ միթէ գրպանէն գետին ինկածը սիրագիր մը չէ՞, նայինք․

ԲԱՐԹ․ Տո՛ւր, տուր ինծի նայիմ։

ԿՈՄՍ․ Մի՛ շտապեր, ծերուկ, ամեն մարդ իր արհեստը գիտէ։ Թէ որ գրպանէդ դեղագիր մը ինկնար․․․։

ՎԱՐԴ․ (Ձեռքը կարկառելով) Ա՛հ, գիտեմ, գիտեմ ինչ է այդ։ (Նամակը կառնու և իր գրպանին մէջ կը պահէ)։

ԲԱՐԹ․ Ե՞րբ պիտի երթաս ասկէց։

ԿՈՄՍ․ Ինչո՛ւ կարտորաս․ լաւ, մնաս բարեւ, բժշկապետ, քէն մի պահեր ինծի։ Ընդունէ, սիրելի, սա իմ մէկ անուշ խօսքս ալ։ Աղերս մատուցէք մահուան որ գիս քանի մը պատերազմաց մէջ ալ խնայէ․ զձեզ տեսնելէս 'ի վեր կեանքը անուշցաւ աչքիս։

ԲԱՐԹ․ Եղ, եղ գնա ալ․ թէ որ մահը իմ ուխտս կատարէր, ուրիշ բան

մը կը խնդրէի . . . .

ՎԱՐԴ. Մահը, հապա դու մահուան մտերիմը, բժիշկ չես դուն. դու անոր այնքան զոհեր կը նուիրես, որ քեզի բան մը չի զլանար։ (Դուրս կելնէ)։

ՏԵՍԻԼ ԺԵ.

ԲԱՐԹԱՄ, ՎԱՐԴՈՒՀԻ

ԲԱՐԹ. (Անոր երթալը դիտելով) Վերջապէս գնաց աս անօրէնը. (Մեկուսի) Կեղծաւորութիւն բանեցունենք։

ՎԱՐԴ. Պարոն, չես ուրանար անշուշտ որ աս գինուորը ուրախ զուարթ մարդ մըն է. թէեւ գինով էր, բայց դարձեալ կերեւար որ խելքէ եւ դաստիարակութենէ բոլորովին զուրկ չէ։

ԲԱՐԹ. Ես ալ ուրախ եմ, սիրականըս, որ գլխացաւէ մը ազատեցանք։ Բայց միթէ քեզի յանձնած նամակը ինծի հետ կարդալու փափաք չունիս։

ՎԱՐԴ. Ի՞նչ նամակ։

ԲԱՐԹ. Այն գիրը՝ զոր գետինէն առնելու պէս ըրաւ որ ձեռքդ յանձնէ։

ՎԱՐԴ. Այո, այն գիրը իմ զօրական հօր եղբօր որդւոյս գիրն է, որ գրպանէս գետին ինկեր էր։

ԲԱՐԹ. Սակայն ինծի անանկ մը երեւցաւ այն գիրը ինքը իր գրպանէն հանեց։ Ի՞նչ կըլլայ թէ որ անգամ մը տեսնեմ։

ՎԱՐԴ. Ցիրաւի, ասոր գրի չգիտեմ

ԲԱՐԹ. (Գրպանը ցոյց տալով) Ահա, աս տեղը դիր։

ՎԱՐԴ. Ա՛հ, խելքս մուր է եղեր նոյն միջոցին։

ԲԱՐԹ. Վարդուհի, հոգիս, տարակոյս չունիմ որ խենդի մը սիրագիրըն է։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Մինչեւ որ չի բարկացունեմ զինքը, ձեռքէն ազատելիք չունիմ։

ԲԱՐԹ. Տո՛ւր նայիմ, իմ անուշիկ աղջիկս։

ՎԱՐԴ. Բայց ինչու այդչափ կը պնդես, պարոն. արդեօք նորէն կասկած մը խայթեց միտքդ։

ԲԱՐԹ. Իսկ դու ալ ինչ պատճառաւ կը մերժես։

ՎԱՐԴ. Նորէն կըսեմ, պարոն, որ այս գիրս քու բացած եւ հօր եղբօրս որդիէս առած գիրս է. եւ որովհետեւ յամառելով կը կենաս, պէտք է բացարձակ ըսել որ քու այդ համարձակութիւնդ չափազանց անախորժելի է ինծի։

ԲԱՐԹ. Չեմ հասկնար ինչ ըսել կուզես։

ՎԱՐԴ. Միթէ ես քեզի եկած թըղթերը կը քննեմ. ուրեմն դուն ինչու իմ գիրերուս կը խառնուիս։ Թէ որ նախանձ ես, այդ նախանձը նախատելի է ինծի. թէ որ քու իմ վրայ գրաւած իշխանութիւնդ չափազանց գործածել կուզես, այդ իշխանութիւնդ ալ տաժանելի է։

ԲԱՐԹ. Տաժանելի։ Այդ կերպով երբեք ինծի հետ խօսած չունէիր։

ՎԱՐԴ. Թէ որ մինչեւ այսօր լեզուս կապած նստեր էի, ըսել չէ

ուզեր. որ զիս այսպէս չարաչար անարգես ։

ԲԱՐԹ. Ի՞նչ անարգանք կրեցիր ։

ՎԱՐԴ. Միթէ անարգանք, եւ անլուր բան մը չէ՞ ուրիշին նամակը բանալ կարդալը ։

ԲԱՐԹ. Մարդ մը իր կնկանը նամակը . . . ։

ՎԱՐԴ. Ես տակաւին քու կինդ չեմ. բայց դարձեալ, ինչ իրաւամբ . . . ։

ԲԱՐԹ. Վարպետութեամբ մը խնդիրը փոխել, ուշադրութիւնս ուրիշ տեղ դարձնել կուզես. բայց չէ, չեմ բռնուիր, պէտք տեսնեմ այն նամակը, որ անտարակոյս սիրահարէ մը ուղղուած է, այո, պէտք տեսնեմ ։

ՎԱՐԴ. Ոչ, չի պէտք տեսնես. Մի մոռնար քանի, կը ձգեմ տունէն կերթամ եւ առջեւս ելլողէն պատըսպարան մը կը խնդրեմ ։

ԲԱՐԹ. Ո՞վ կընդունի զքեզ ։

ՎԱՐԴ. Նայինք ալ ով կընդունի ։

ԲԱՐԹ. Հոս Թրքստան չենք, հոս կանանց միշտ իրաւունք չեն 'ի տար. եւ քեզ համոզելու համար որ իմ գլխես եմ, կերթամ անձամբ դուռը գոցելու ։

ՎԱՐԴ. Ա՛հ, աչքը իմ Աստուած, ինչ ըսեմ հիմա . . . շուտ, հօր եղբօր որդւոյս նամակը գտնեմ միւսին տեղը եւ այնպէս մը խաղցունեմ զինքը որ իր ձեռօքը զայն առնու ։ (Գիրերը կը փոփոխէ. առղտոկանենի գիրը գրպանը կը դնէ . որուն ծայրը կերեւի).

ԲԱՐԹ. (Դառնալով) Է՛հ, ալ հիմա ազատում չունիս ։

ՎԱՐԴ. Ի՞նչ իրաւամբ այդ բռնութիւնը կը բանեցընես, կաղաչեմ ։

ԲԱՐԹ. Այն իրաւամբ որ զօրաւորը տկարին վրայ կը բանեցնէ, բռնութեան իրաւամբ, որ անդիմադրելի է ։

ՎԱՐԴ. Եթէ զիս մեռցունես անգամ՝ նամակը պիտի չի ցուցընեմ ։

ԲԱՐԹ. (Ոտքը գետինը զարնելով) Տիրուհիս, Տիրուհիս, խելքդ գլուխդ . . . ։

ՎԱՐԴ. (Աթոռի մը վրայ կիյնայ եւ մարմրիլ կը կեղծէ) Ա՛խ, այս ինչ սոսկալի բռնութիւն, անիրաւութիւն է . . . ։

ԲԱՐԹ. Սա գիրը առ, ապա թէ ոչ բարկութենէս վախցիր . . . ։

ՎԱՐԴ. (Գլուխը ետեւ ինկած) Ա՛հ, թշուառ Վարդուհի

ԲԱՐԹ. Ի՞նչ ունիս ։

ՎԱՐԴ. Ի՞նչ անհնելի ապագայ ։

ԲԱՐԹ. Վարդուհի ։

ՎԱՐԴ. Զայրութէս շունչս կը կտրի . . . ։

ԲԱՐԹ. Գէշ վիճակի մէջ է ։

ՎԱՐԴ. Ա՛հ, կը հալիմ, կը մաշիմ, կը մեռնիմ ։

ԲԱՐԹ. (Անոր երակը կը շօշափէ եւ մեկուսի կըսէ) Աստուած իմ, ահա, նամակին ծայրը. չտեսած առնում շուտ կարդամ զայն ։ (Կը շարունակէ անոր երակը շօշափել, եւ նամակը առնելով կըրկըրուկ կարդալ քիչ մը անդին դարձած)։

ՎԱՐԴ. (Նոյն մարած վճակին մէջ) Անբաղդ օրիորդս, ահ, ահ . . . ։

ԲԱՐԹ. (Անոր թեւը կը թողու եւ կըսէ մեկուսի) Ի՞նչ մոլեգին հետաքրքրութեամբ կը պաշարի մարդս, նոյն իսկ իր վախցած բանը իմանալու համար ։

ՎԱՐԴ. Ա՛հ, ցաւալի Վարդուհի ։

ԲԱՐԹ. Այս Ջղային մարմրումքը հասարակ Ջրերէն առաջ կուգան. (Աթոռին ետին կեցած՝ եւ երակը շօշափելով նամակը կը կարդայ նորէն ։ Վար-

դուռէն կամաց մը գլուխը կը վերցնէ, սանդուխի պէս անոր կը նայի, գլուխ կը շարժէ ու նորէն կիյնայ առանց խօսելու)։

(Բարթամ կը շարունակէ) Ո՛ երկինք, բնա-տուգիլ հօր եղբօր որդւոյն նամակն է եղեր․ անիծեալ եւ մասայօրգ հետա-քրքրութիւն․ հիմա ինչպէս համո-զեցնեմ զինքը․ Գոնէ նամակը գաղտնի կարդալը չիմանար․ (Վար-դուհին օգնել ձեւացնելով գիրը կամա-ցուկ մը անոր գրպանէնկը կը դնէ)։

ՎԱՐԴ. (կը հառաչէ) Ա՛հ....

ԲԱՐԹ. Բան մը չէ կանցնի, որդ-եակ, գլխի պտոյտ մ'էր մինակ որ բռնեց․ վասն զի երակներդ դար-կը կանոնաւոր է․ (կերթայ սեղանին վրայէն շիշ մ'առնելու)։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Նորէն նամակը տեղը դրեր է։ Աղէկ նշան։

ԲԱՐԹ. Իմ սիրական Վարդուհիս, առ ասկէց ջուրը քիչ մը հոտուը-տայ։

ՎԱՐԴ. Քեզինէ բան մը չեմ ուզեր, քովէս հեռացիր։

ԲԱՐԹ. Կը խոստովանիմ որ այդ տոմսակին վրայ աւելիկէկ խստութիւն ցուցուցի։

ՎԱՐԴ. Բանը տոմսակին վրայ չէ, հապա քու բան ուզելուդ կերպն է բարբարոսական։

ԲԱՐԹ. (Ծունր դրած) Խնդրեմ նե-րէ․ յանցանքս ճանչնալով կը զղ-ջամ, եւ ահա երես անկեալ պատ-րաստ եմ հրամայած հատուցումդ ը-նելու։

ՎԱՐԴ. Այո՛, գիտցիր է, ներէ ը-նելը, եւ գիտ կը սպասես որ այս գիրը ազգականէս եկած չէ։

ԲԱՐԹ. Թէ անոր մէ ու թէ ուրի-չէ մը եկած ըլլայ, չեմ ուզեր հաս-կընալ։

ՎԱՐԴ. (Նամակը տալով) Տեսա՞ր հի-մա որ քաղաքավարութեամբ ամէն բան կրնաս ստանալ։ Առ կարդա՛։

ԲԱՐԹ. Այդ քու առաքինի ըն-թացքովդ եթէ կասկած ալ ունե-նայի կը փարատէր։

ՎԱՐԴ. Առ կարդա՛, կարդա՛։

ԲԱՐԹ. Աստուած չընէ որ այդպի-սի նախատինք մը ընեմ քեզ։

ՎԱՐԴ. Ուրեմն կը մերժես կար-դալու։

ԲԱՐԹ. Այո՛, այս մերժումս իմ վստահութեանս փոխարէն մէկ ա-պացոյց մը համարէ։ Ես հիմա պի-տի երթամ խնդրած Մարինան տեսնե-լու, որուն տաքէն, ինչ պատճառաւ չգիտեմ, Ֆիկարօն արիւն առեր է։ Վարդուհի դուն ալ հետս կուգաս։

ՎԱՐԴ. Մէկ պահակէ կուգամ։

ԲԱՐԹ. Հիմա որ հաշտուեցանք, իմ անուշիկ աղջիկս, տուր նայիմ ձեռ-քըդ․ մէկ, թէ որ զիս կարենայիր սիրել, որչափ երջանիկ պիտի ըլլա-յիր։

ՎԱՐԴ. Թէ որ ինձ կարենայիր հա-ճելի ըլլալ, մէկ, որչափ պիտի սի-րէի զքեզ։

ԲԱՐԹ. Պիտի աշխատիմ, այո՛, պի-տի աշխատիմ հաճելի ըլլալու քեզ։ (Կերթայ։)

## ՏԵՍԻԼ ԺԶ.

ՎԱՐԴՈՒՀԻ (Անոր գնալը դիտելով)

ՎԱՐԴ. Ա՛հ, Լէնտոր, պիտի աշխատի եղեր... Բայց սա նամակը կարդանք նայինք, որ քիչ մնաց գլխիս փորձանք պիտի բերէր. (Կը կարդայ և կը դողէ) Բաւէ... ուշ, ուշ կարդացի. կապալրէ որ բացէ 'ի՛երաց դաստիարակիս հետ կռուի բռնուիմ. ափսոս, ինչ յարմար առիթ մը փախուցի. Նամակը առնելու ատենս կզգայի որ կաս կարմիր դարձայ. Դաստիարակիս սա խօսքը միայն իրաւացի է թէ՝ տակաւին երեսիս ջուրը գացած չէ, և թէ ընկերութեան մը մէջ խուլոն կը շփոթիմ, մինչդեռ վարպետ կանայք խօսքերնին և ձեւերնին երեսուն կը յարմարցունեն. Բայց սա անիրաւ մարդուն ձեռքը իյնալը հրեշտակ ալ ըլլայ, սատանայ կը դառնայ.

# ԱՐԱՐ ԵՐՐՈՐԴ

## ՏԵՍԻԼ Ա.

ԲԱՐԹԱՄ (Վշտաբեկ)

ԲԱՐԹ. Այն ինչ բարկութիւն, այն ինչ կամակորութիւն է. Ես կարծէի թէ քիչ մը բարկութիւնը իջաւ... բայց, ո՛վ, որ թշուառականը դրդեց անոր պարոն Վարդանին այսուհետեւ դուռ չառնելու. Արդէն գիտէ որ Պ. Վարդանին իմ ամուսնութեանս մէջ մատ ունի... (Դուռը կը հրեն) Ձեռքէդ եկածը ըրէ կանանց հաճելի ըլլալու համար, բաւական չէ, թէ որ կէտ մը, ամենափոքր կէտ մը պակաս առնես... (Նորէն դըրան կը հրեն). Նայինք ով է դուռը զարնողը.

## ՏԵՍԻԼ Բ.

ԲԱՐԹԱՄ, ԿՈՍՄ (Ուսանողի պէս հագուած)

ԿՈՍՄ. Աստուած այս տունը միշտ շէն, պայծառ և խաղաղ պահէ.

ԲԱՐԹ. (Յանկարծակի) Որչափ ալ յարմար է մեր վիճակին սա մարդուն ըրած մաղթանքը. Ի՞նչ կուզես.

ԿՈՍՄ. Պարոն, ես եմ Լեւոն, ապաստարկը ուսումնականը...

ԲԱՐԹ. Դասատուի պէտք չունիմ.

ԿՈՍՄ. ... Պարոն Վարդանին աշա-

կերպը, այն պարոնը, որ մեծ վանքին երգխմբապետը եւ քու տիկնոջըդ երաժշտութեան վարպետը ըլլալու պատիւ ունի ․․․ եւ ․․․։

ԲԱՐԹ. Երգխմբապետ, Վասիլ, որ պատիւ ունի ․․․ այո, կը ճանչնեմ, ի՞նչ կայ ։

ԿՈՄՍ. (Մեկուսի) Այս ինչ կենդանի է ։ (Բարձր) Յանկարծ վրան ցաւ մը գալով անկողին ինկաւ եւ ․․․։

ԲԱՐԹ. Անկողին ինկաւ ․․․ Վասիլը ։ Աղէկ որ իմացայ ․ անմիջապէս պիտի երթամ տեսնեմ զինքը ։

ԿՈՄՍ. (Մեկուսի) Օ՜հ, անիրաւ սատանայ ։ (Բարձր) Անկողին ըսելովս, պարոն, բազմոցը կիմանամ։

ԲԱՐԹ. Եթէ քիթն անգամ արիւնի պէտք է որ երթամ տեսնեմ ․ առաջ անցիր, ետեւէդ կուգամ ։

ԿՈՄՍ. (Շփոթելով) Պարոն, ասկից զատ ուրիշ յանձնարարութիւն մ՚ալ ունիմ ․․ զմեզ մինակ ընող չըլլայ ։

ԲԱՐԹ. (Մեկուսի) Աս ալ խաբեբայ աշակերտին մէկը պիտի ըլլայ ։ (Բարձր) Չէ, պարոն խորհրդապահ, չէ, մինակ ընող չկայ ։ Արձակ համարձակ խօսէ, եթէ կարող ես ։

ԿՈՄՍ. (Մեկուսի) Անիծեալ ծերունի ։ (Բարձր) Պարոն Վասիլն ապսպրեց նաեւ որ իմացունեմ քեզ ․․․։

ԲԱՐԹ. Բարձր, բարձր խօսէ, ականջիս մէկը խուլ է ։

ԿՈՄՍ. (Ձայնը բարձրացնելով) Է՛հ, շատ աղէկ ։ Թէ Ալմավիվան կոմսը, որ աս մեծ հրապարակին վրայ կը բնակէր ․․․։

ԲԱՐԹ. (Զարհուրած) Ցած, ցած խօսէ, կաղաչեմ ։

ԿՈՄՍ. (Աւելի բարձր) Այս առտու ելեր գացեր է ։ Եւ որովհետեւ ինծմէ իմացած էր որ Ալմավիվան կոմսը ․․․։

ԲԱՐԹ. Ցած, ցած ձայնով խօսէ, կաղաչեմ ։

ԿՈՄՍ. (Նոյն ձայնով) Այս քաղքին մէջն է, եւ Վարդուհի օրիորդին անոր նամակ գրելը յայտներ էի ․․․։

ԲԱՐԹ. Անոր նամակ գրելը ․ բայց, սիրելի բարեկամ, քիչ մը կամաց խօսէ, կաղաչեմ, կը պաղատիմ, կամաց ։ Նստինք, եւ մտերմաբար խօսինք ․ Ի՞նչ ըսիր, թէ Վարդուհին թղթակցութիւն ունի ․․․։

ԿՈՄՍ. (Խրոխտաբար) Անշուշտ ․ Պարոն Վասիլն այս թղթակցութեան վրայ վշտանալով խնդրեց որ այս նամակը քեզ ցոյց տամ ։ Բայց՝ այնպէս անվայելուչ կերպով կը վարուիս մարդու հետ, եւ ամեն բան գէշի կառնես որ ․․․։

ԲԱՐԹ. Է՛հ, Տէր Աստուած, աղէկի կառնեմ ։ Բայց արդեօք կարելի չէ՞ քիչ մը ձայնդ մեղմացունելդ ։

ԿՈՄՍ. Քիչ մ՚առաջ ըսողը դուն չէի՞ր թէ ականջիդ մէկը խուլ է ։

ԲԱՐԹ. Պարոն Լեւոն, մեղք մի համարեր, մի մեղադրեր զիս առաջ քիչ մը կասկածոտ եւ զգուշաւոր երեւալուս ․ այնպիսի դաւաճաններ կան բոլորտիքս, այնպիսի թակարդներ կը լարեն չորս կողմս որ ․․․ ասկից զատ քու հնաւքնելին կերպարանքդ, հասակդ, շարժուածքդ քիչ մը ․․․ ներէ, ներէ, ըսի ա ։ Հիմա, նայինք ո՞ւր է նամակը ։

ԿՈՄՍ. Լաւ, ահա հիմա կարգի եկար, Պարոն ։ Բայց կը վախնամ որ ծակէ մը ականջ չկախեն ։

ԲԱՐԹ. Է՛հ, ո՞վ պիտի ականջ դընէ ․ առանց իմ հրամանիս տանս մէջ ճանճ չի թռիր ․ ասկից զատ ծառաներս շարժելու կարողութիւն չու-

նին · Վարդուհին ալ սրտնեղութենէն խուցը փակուած է , կարծես թէ սատանան մտեր է տունս ։ Բայց բարեյաջողին ապահով ըլլալու համար ; անգամ մ'ալ նայիմ (Կ'երթայ կամացուկ մը Վարդուհիին դուռը կը բանայ)։

ԿՈՄՍ ։ (Մեկուսի) Շփոթութենէս մոռնալեցայ , նամակին խօսքը բերնէս փախաւ , հիմա պէտք է խոյս տալ · շատ աղէկ կըլլար թէ որ չերեւայի . . . Իսկ թէ որ անգամ մը Բարթամին ցուցընեմ գիրս եւ նոյն միջոցին այս բանս Վարդուհիին իմաց տամ , յիրաւի վարպետ գործ մը բրած կըլլամ ։

ԲԱՐԹ ։ (Մտածուն վրայ քալելով) Վարդուհին իր պատուհանին քովը նստած՝ իր հօր եղբօր որդւոյն նամակը կարդալու վրայ է . . Նայինք հիմա իրեն գրածը ինչպէս է ։

ԿՈՄՍ ։ (Վարդուհիին նամակը կը յանձնէ) Ահաւասիկ ։ (Մեկուսի) Անտարակոյս իմ գրած նամակս է կարդացածը ։

ԲԱՐԹ ։ (Կը կարդայ) «Քանի որ քու անունդ եւ վիճակդ ինծ յայտնեցիր» Ա՛խ , նենգաւոր աղջիկ , ճիշդ իր ձեռագիրն է ։

ԿՈՄՍ ։ (Զարհուրած) Դու ալ ցած խօսէ ։

ԲԱՐԹ ։ Որչափ շնորհապարտ եմ քեզ , սիրելիս իմ ։

ԿՈՄՍ ։ Ամէն բան լմնցնելնես ետեւ՝ թէ որ պարտաւորութիւն մը ունենաս ինծ , այն ժամանակ շնորհակալ եղիր ։ Այս միջոցիս , պարոն Վասիլին փաստաբանի մը հետ ըրած գործին նայելով . . . ;

ԲԱՐԹ ։ Փաստաբանի մը հետ · թերեւս իմ ամուսնութեանս համար ըլլայ ։

ԿՈՄՍ ։ Ահա այս պատճառաւ ամէն բան կարգին դնել պէտք է ։ Պարոն Վասիլը բաւ ինծ որ վաղուան համար ամէն բան պատրաստ ըլլալուն , կը յուսամ · բայց թէ որ Վարդուհին դիմադրութիւն ցուցընէ , ինչ պիտի ընես ։

ԲԱՐԹ ։ Կարծեմ թէ պիտի դիմադրէ ։

ԿՈՄՍ ։ (Ցուցած նամակը ետ առնել կուզէ, Բարթամ չի թողուր) Ահա հիմա է քեզի ծառայելու ատենը ։ Այս նամակը Վարդուհիին կը ցուցընենք եւ թէ որ հարկ ըլլայ , (Խորհրդաբար) պիտի ըսեմ անոր որ կոմսը զինքը ուրիշ կնկան մը սիրոյն զոհած՝ եւ այս իր գրած գիրն ալ նոյն կնկան յանձներ է ։ Այսպիսի հնարքով մը անպատճառ Վարդուհին շփոթութեան , սրտմտութեան եւ յուսահատութեան մէջ կիյնայ եւ կրնաս երեւակայել թէ վերջը ուր կերթայ . . . ։

ԲԱՐԹ ։ (Ցնծալով) Դարձեալ գըրպարտութիւն ։ Սիրելի բարեկամ , ալ այս խօսքիդ վրայ , բոլորովին համոզուեցայ որ պարոն Վասիլին խորհրդակից եւ անոր կողմէ իբր թարգման հոս եկած ես ։ Բայց որպէս զի Վարդուհին չկասկածի որ մենք խօսքը մէկ ըրած ենք , աւելի աղէկ չըլլա՞ր որ անգամ մը զքեզ տեսնէ ։

ԿՈՄՍ ։ (Ուրախութիւնը ծածկելով) Յիրաւի , պարոն Վասիլին ալ կարծիքը այս էր . . . բայց ինչպէս ընենք . . . ժամանակը ուշ է . . . ։

ԲԱՐԹ ։ Դիւրին ճամբայ մը կայ · Վարդուհիին կըսեմ որ անոր կողմէ դաս տալու համար եկած ես ։

ԿՈՄՍ ։ Քեզ հաճոյ ըլլալու համար

ամէն բան ընելու պատրաստ եմ։ Բայց քաջ միտ դիր որ այսպիսի չնչին խաղեր, չնչին դատաստաններ եւ պատմութիւններ կատակերգութեան նիւթ կըլլան, ու թէ որ Վարդուհին անգամ մը կատակածի երթայ . . . ,

ԲԱՐԹ․ Երբոր ես կը ներկայացունեմ զքեզ անոր, ալ կատակածի տեղի չի մնար․ աւելի ծաղանալ սիրահարի մը կը նմանիս, քան թէ պաշտօնատէր բարեկամի մը ։

ԿՈՄՍ․ Ուրեմն, դուն այնպէս համոզուած ես որ այս դէմքովս մեր դաւը եւ խաբէութիւնը կրնանք առաջ տանիլ ։

ԲԱՐԹ․ Սատանան անգամ մեր միտքը չի կրնար գուշակել ։ Այս խրկուն դարձեալ դէչ ժամը բռներ է, բայց թէ որ անգամ մը զքեզ տեսնէ . . . ։ Իր կիրքերը ներսի խուցն է, մինչեւ դառնալս անով զբօսիր, նայիմ պիտի կարենամ միտքը ընել եւ զինքը հոս բերել ։

ԿՈՄՍ․ Զըլլայ որ տուած նամակիս վրայ անոր խօսք բանաս ։

ԲԱՐԹ․ Ի հարկէ ամէն բան ժամանակին ընելու է․ ապա թէ ոչ բոլոր ազդեցութիւնը կը կորսնցունէ ։ Բայց այդ ազդարարութիւնը երկու անգամ է որ կը կրկնես, չեմ ախորժիր որ նոյն բանը երկու անգամ ըսեն ինծի ։ (Կերթայ) ։

## ՏԵՍԻԼ Գ.

### ԿՈՄՍ

ԿՈՄՍ․ Էօֆ, վերջապէս ազատեցայ ։ Որչափ դժուարին է եղեր այս սատանային խօսք հասկցունելը ։ Ֆիկարօն լաւ կը ճանչէ եղեր զանի ։ Քանի քանի անգամ մաղ մնաց խաբէութիւնը երեւան պիտի ելնէր։ Թշուառականը՝ դոչէն բռնուելու սատանայ չէ ։ Յիրաւի կըսեմ, թէ որ այն փափուկ վայրկենին նամակը միտքս չիյնար, բանս բուսած էր, բոլորովին անճրկած եւ ծաղր ու ծանակ պիտի մնայի ։ Տէր Աստուած, ներսը կռուի մը ձայն կայ․ թէ որ Վարդուհին կամակորութեամբ գալ չուզէ, նայէ դուն բանը ։ Ականջ դնենք ՝ Վայ․ . . խուցէն դուրս ելնել չուզեր, ուրեմն մեր դաւակցութեան պտուղը հովին պիտի երթայ ։ (Նորէն մտիկ ընելու կը դառնայ) Ահաւասիկ կուգայ․ քիչ մը պահուըտիմ ։ (Ներսի խուցը կը քաշուի)

## ՏԵՍԻԼ Դ.

### ԿՈՄՍ, ՎԱՐԴՈՒՀԻ, ԲԱՐԹԱՄ

ՎԱՐԴ․ (Շինծու բարկութեամբ) Անօգուտ տեղը կաշխատիս, Պարոն․ իմ որոշումս անդրդուելի է, այսուհետեւ երաժշտութեան խօսքը անգամ չեմ

կան թուղթ մը առնելով) Տիրուհիս, արդեօք այս է սորված երգդ ։

ՎԱՐԴ. Այո, անօգուտ զգուշութեան մէկ դժուարին կտորն է ։

ԲԱՐԹ. Այս անօգուտ զգուշութեան եղանակը Երբ պիտի վերջանայ ։

ՊՈՍՏ. Այս է այսօրեայ նոր ելուկ երգը. գարնանային եղանակին նըկարագիրն է, խիստ վառվռուն եւ հեշտալի ։ Տիրուհիս, միթէ կը հաճիք անգամ մը փորձելու ։

ՎԱՐԴ. (կամաց նայելով) Ամենայն սիրով ։ Գարնան պատկերը միշտ զմայլելի է որովհետեւ, բնութեան մանկական տեսիլն է ։ Կարծես թէ մարդկային սիրտը նոր աշխոյժ եւ զգայողութիւն կզգենու քանի ձմեռնային դառնաշունչ քամիէն կը հեռանայ, ինչպէս որ ամիսներով բանտը մնացած սարեակ մը աւելի մեծ անձկով կը վայելէ ձեռք ձգած ազատութիւնը ։

ԲԱՐԹ. (Ցած ձայնով առ կոմսն) Կը նայիս որ երեւակայութիւնը վիպասանական տեսիլներով լեցուն է ։

ԿՈՄՍ. (Ցած) Արդեօք անոնց գործնական նշանակութեան խելքդ կը հասնի ։

ԲԱՐԹ. Ա՛, ինքս անկարան էի ։
(Կերթայ Վարդուհիին նստած թիկնաթոռին վրայ կը նայի).

(Վարդուհին կերգէ).

Երբոր 'ի դաշտին
Սիրով կաթոգին
Գայ գարուն՝
Սիրողաց ցանկալին.
Ամէն բան շունչ կառնէ,
Իր հուրը կը սփռէ,
Նոր ծաղկանց մէջ
Նոր նոր սիրտեր կայրէ ։
Տես ահա դուրս կելնեն,
Գիւղէն եւ խրճիթէն,
Ոչխար եւ գառնուկներ
Արօտ ու ձոր կառնեն ։
Կը պօռան
Կը խայտան,
Կը վազեն
Կը հրճուին
Գառնիկներ կարածին
Ծաղկօք թարմ նորածին
Զորս դին շունչք հաւատարիմ
Հօտին հոգ եւ փոյթ տանին ։
Բայց Լէնտօրն սիրավառ
Իրբեւ ջերմ սիրահար
Կը մտածէ անդադար
Սիրել լոկ իր հովուուհին ։
(Նոյն եղանակին վրայ)
Քու մօրմէդ հեռի
Ո դու հովուուհի
Գաս երգելով
Սիրատենչ հովուին քով ։
Բայց, աւաղ, սէրն ունի
Նետ՝ որ սիրտ կարկինի ։
Միթէ երգել,
Կարող է, սէր ջնջել ։
Քաղցրաձայն սրինգները,
Թռչնոց մեղմ երգերը,
Նորափայլ քու դէմքդ,
Նազելի հասակդ,
Ամէն բան՝
Սէր կուտան.
Խեղճ աղջկան,
Սիրոյն հասան ։
Իսկ Լէնտօր աչք անկած
Սպասէ դառն իր որսին,
Սիրուհին անկասկած
Կերեւի իւր աչքին ։
Լէնտօրն է կը վառէ
Հովուուհին կընդգրկէ
Կայտը, թէեւ տրտում է ։
Բարկութիւն կը կեղծէ ։
(Փոքրիկ կըկնութիւն)

Հովիւն հրաւէր
Թափէ ամեն հնար
Լեզու հոգ ու սէր
Գգուանք հեշտաբեր ·
Մինչեւ որ աղջկան
Գաղտ տան ցասման ·
Իսկ թ' անդին նախանձն
Վրդովէ անոնց խանդն
Սիրահարք, քնքուշ
Սէրպահ են, բզզուշ ·
Զի սէրն թագուն
Գրգռի որն 'ի բուն ։

(Բաղթամ այս երգը լսելու տեղն կը թմրի կը քնանայ։ Կոմսը փոքրիկ կրկնութիւնը երգելու ժամուն Վարդուհին ձեռքը կառնու ու կը համբուրէ քանի մը անգամ ։ Վարդուհին կը լալի, կը նուաղի, այնպէս որ փոքր առ փոքր ձայնը կը մարի։ Երգիծն ալ անոր ձայնին համեմատ կը դադրի ։ Բաղթամ որ երգին ձայնին քընացեր էր, լռութիւնը աւելնալուն պէս կարթըննայ ։ Կոմսը ոտք կելնէ, Վարդուհին եւ Երգիծը երգին վերջին մասը կակուղին նորէն նուագել ։ Թէ որ Բաղթամ նորէն նէջէ նոյն բանը ընելու է)։

ԿՈՄՍ. Արդարեւ գմայլելի երգ մըն է այս, եւ Վարդուհի, ինչ ու չիմ եւ զգայուն կերպով կերգէք. գիտէք արդեօք...

ՎԱՐԴ. Շողոքորթութիւն չեմ սիրեր, Տէր իմ։ Փոքր ինչ սորվածս ալ դաստիարակիս շնորհն է։

ԲԱՂԹ. (Յօրանջելով) Կարծեմ թէ էն աղուոր կտորին քնացայ մնացի. ինչ ըսեմ. ցորեկը այնչափ աստիս անդին հիւանդներուս կը վազեմ, կը պտըտիմ, կը գլտորիմ որ ծունկերս կը ցաւին, եւ աթոռի մը վրայ նստելուս պէս քունս կը կտրիմ... (Կելնէ ու աթոռը անդին կը նետէ)։

ՎԱՐԴ. (Յած, առ Կոմսն) Ֆլկարօն մեր մնաց ։

ԿՈՄՍ. Ժամանակ չահիլը նայինք ·

ԲԱՂԹ. Աղէկ միտքս ինկաւ, պարոն Լեւոն, եւ արդէն մեր ալեւոր վաղուցին ալ ըսած եմ։ Արդեօք Վարդուհիին աւելի դուարթ եղանակներ սորվեցունելու հնարը չկայ ։ Ինչ պէտք է մեծ, մեծ ու մելամաղձոտ եղանակներ տալ, որ վերջէն մար կը գլորին. ինչ են ատ հի, հօ, ա, ա, ա, ա, ձայները, որով կարծես թէ մեռելի յուղարկաւորութիւն կը տանինք... մանր մունր սիրուն երգեր չկան, զոր մեր երիտասարդական ժամանակը կերգէինք, եւ շատ շուտով գոց կընէինք։ Անենօք քանի մը հատ միտքս կայ... օրինակի համար... (Երաժշտական եղանակ մը չալելու տեղն, գլուխը քերելով՝ երգին խօսքերը կը փնտռէ եւ մատները երալու ձեւը առնելով՝ եւ ծունկերը շարժելով ծերերուն պէս կը պարէ ու կերգէ)։

Հասիր, հասիր Վարդուհիս
Իմ մէկ հատիկ սիրելիս
Զիս երիկ առ, տնաչէն...

(Ծիծաղելով կոմսին կըսէ) Երգին մէջ բնագիր անունը Անթառամ է, բայց աւելի ախորժելի եւ մեր վիճակին յարմարցունելու համար Վարդուհի դրի։ Հա՛, հա՛, հա՛, ինչ կըսես խելքիս. լաւ է, հա՛, լաւ ։

ԿՈՄՍ. (Ծիծաղելով) Օ՜հ, օ՜հ, օ՜հ, պատուական, սքանչելի ։

## ՏԵՍԻԼ Ե.

ՎԱՐԴՈՒՀԻ, ԲԱՐԹԱՄ, ԿՈՍՍ, ՖԻԿԱՐՕ (Նկրտի գին)

---

ԲԱՐԹ. (կերգէ)։

Հասիր, հասիր Վարդուհիս,
Իմ մէկ հատիկ սիրելիս,
Ձիս էրիկ առ, մինչէն
Թէեւ չեմ ես գեղադէմ,
Բայց գիշերը խոր մութին
Իմ աչքերս ալ՝ կը փայլին
Ինչպէս որ էն վառ կատուին
Աչուըններէն լոյս ցայտին։

(Վերջի մասը կը կրկնէ պարելով. Ֆիկարօն ալ ետեւէն անոր շարժումները կը ծաղրէ)։

Թէեւ չեմ ես գեղադէմ, եւայլն։

(Ֆիկարօն տեսնելով) Վա՜յ, ներս մտիր նայիմ, պարոն սափրիչ, առաջ անցիր, սքանչելիդ, սիրուն մարդ։

ՖԻԿ. (Բարեւ տալով) Պարոն, մայրս ալ ատենօք կըսէր որ սիրուն մարդ եմ։ Բայց անկից ետքը այլեցայ։ (Մեկուսի առ կոմսն) Այդպէս, Տէր իմ։ (Այս տեսլին ժամանակը կոմսը բոլոր ջիգը կը թափէ Վարդուհիին հետ խօսելու. բայց դաստիարակին խուզարկու եւ նախանձոտ աչքը արգելք կըլլայ։ Ուստի զատ ու լուռ խաղ մը կանցնի դերասանաց մէջ, որ բոլորովին Բարթամին եւ Ֆիկարօին մէջ անցած վիճաբանութենէն տարբեր է)։

ԲԱՐԹ. Արդեօք նորէն լուծողական դեղ, արիւն առնել, դարման, ապեղանի տալու հոս եկար. բոլոր տնեցիքը դեղել, թմրեցնելու միտք ունիս։

ՖԻԿ. Պարոն, ամէն օր հարսը հարսնիք չեն ըներ։ Արդէն գիտես, Պարոն, որ բաց 'ի օրական սովորած խնամքէս, պէտք եղած ատեն հրամանիդ չեմ սպասեր եւ մեծ եռանդ ունիմ հրամաններդ գործադրելու։

ԲԱՐԹ. Մեծ եռանդ ունիս։ Հապա ինչ տեսակ դարման է այդ, Պարոն դեղագործ, որով ծառայիս մէկը անդադար կը յորանջէ եւ աչքերը բաց կը քնանայ. իսկ միւսը, երեք ժամէ 'ի վեր այնքան կը փռնգտայ որ կարծես թէ գանկը պիտի ճաթի եւ ուղեղը դուրս թափի, ըսէ նայիմ ինչ պիտի պրծցնես այս խեղճերուն։

ՖԻԿ. Ի՞նչ պիտի ըսեմ։

ԲԱՐԹ. Այո։

ՖԻԿ. Պիտի ըսեմ... էհ, դժուար բան մըն է... փռնգտացողին պիտի ըսեմ, Խեր ըլլայ. խնտ պառակ. իսկ յորանջողին, գնա տեղդ պառկէ։ Այնքան մեծ խելք մը պէտք է այս բաներս ըսելու համար։

ԲԱՐԹ. Ձէ, պէտք չէ. բայց կարծեմ թէ սպասաւորներուս ունեցած քիչ մը խելքն ալ առած արիւնովդ եւ տուած դեղերովդ բոլորովին հատցուցիր ես։ Միթէ նոյն եռանդդ դրդեց քեզ որ երթաս ջորիիս կոյր աչքերուն վրայ ապեղանի փակցունես։ Այդ ապեղանիով անոր աչքերը պիտի բանալ կարծես։

ՖԻԿ. Թէ որ չի բանայ... կարծեմ թէ գոցուելուն ալ պատճառ չըլլար։

ԲԱՐԹ. Գոնէ հաշիւդ մեծցունելու պատճառ կըլլայ, այնպէս չէ՞, խաբեբայ։

ՖԻԿ. Ոչ, ես այն դարմանս հաշուի չանցուցի։ Ես ան բարեգործութիւնը իմ հոգւոյս համար ըրի։ Հաւատա ինծ, Պարոն. բարեկութիւնը գէշ բան է. արդէն մարդիկ յիմարութեան

եւ աղէտից մէջ թաղուած են։ Հոգ ու ցաւ մէկդի թողլով զուարճանալը նայելու է, կեցցէ զբօսանք։ Այսօր կանք, վաղը չի կանք, ո՛վ գիտէ, կարելի է երեք օրէն աշխարհ կը կործանի։

ԲԱՐԹ. Պարոն խմաստակ, աւելի լաւ կընես թէ որ առանց կմկմալու շահովը իմ հարիւր ոսկիս հատուցանես, թէ ոչ հետդ ուրիշ կերպով պիտի խօսիմ։

ՖԻԿ. Միթէ հաւատարմութիւն չունիս վրաս։ Քու հարիւր ոսկիդ քովս սրբազան աւանդ մըն է։ Լաւագոյն կը սեպեմ ցմահ պարտական մնալ քեզ, քան թէ ժամ մը նոյն պարտքս ուրանալ։

ԲԱՐԹ. Թող այդ մէկդի։ Հիմա ըսէ ինծի թէ որդից տարած չաքարները ինչպէս գտաւ։

ՖԻԿ. Ի՞նչ տեսակ չաքար, ինչ բանի կուզես։

ԲԱՐԹ. Այո՛, չաքար, որ այս առտու այսպէս նամակի թղթի մէջ փաթթած տարիր....

ՖԻԿ. Կաւաք ըլլամ թէ որ բան մը....

ՌՕԶ. (ընդմիջելով) Պարոն Ֆիկարօ, ապսպրածիս պէս այն չաքարները տուաք իմ կողմէս յատկապէս տուէք....

ՖԻԿ. Հա՛, հա՛, սա, սա առտուան չաքարները։ Ի՞նչ անմիտ եմ. բոլորովին միտքէս ելեր էր... ա՛հ, պզտիկը շնորհակալ եղաւ, մեծապէս շնորհակալ, եւ անուշ անուշ կլլեց։

ԲԱՐԹ. Այո՛, կլլեց, Պարոն, կլլեց. այս նենգութեան թելը ձեռքէդ փախեր էր, միտքդ ձգեցին. հոգ չէ։ Ցերաւի, սքանչելի արհեստ մէ գործածդ, պարոն։

ՖԻԿ. Ի՞նչ կայ որ, Պարոն։

ԲԱՐԹ. Այդ արհեստով աղուոր համբաւ մը պիտի առնաս, Պարոն։

ՖԻԿ. Պիտի աշխատիմ պաշտպանելու նոյն համբաւս։

ԲԱՐԹ. Անշուշտ տանջանք կրելու համար։

ՖԻԿ. Այդ իմ գիտնալու բանս է։

ԲԱՐԹ. Պարոն, այդ ինչ ամբարտաւան կերպեր են։ Գիտցած ըլլաս որ երբոր խմաստակի մը հետ կը վիճաբանիմ անոր բնաւ գլուխ չեմ ծռեր։

ՖԻԿ. (կռնակը անոր դարձնելով) Ուրեմն, պարոն, այս մասին համամիտ չենք։ Ես ընդհակառակն անոր միշտ կռնակս կը դարձունեմ։

ԲԱՐԹ. Էհէ, էհէ, պարոն Լեւոն, կը լսես սա խենդին խօսքերը։

ՖԻԿ. Չէ, ես խենդ չեմ. Պարոն, դուն կարծես թէ գեղջուկ սափրիչի մը հետ է գործդ, որ ածելին ածելէն ուրիշ բան չգիտէր. բայց գիտցիր, Պարոն, որ ես ալ Մատրիտի մէջ գրիչ շարժած եմ, եւ թէ որ քու ու բանսարկու լեզուներ գէմըս չելլէին....

ԲԱՐԹ. Է՛յ, ինչու համար անկեցելար, եւ հոս գալով արհեստդ փոխեցիր....

ՖԻԿ. Ի՞նչ ընեմ, պարագայից յարմարելու է։ Եկու դու իմ տեղս անցիր։

ԲԱՐԹ. Ես քու տեղդ անցնիմ։ Աստուած չընէ. միայն թէ խենդ ըլլալ պէտք է։

ՖԻԿ. Պարոն, կը նայիմ որ յարմարութիւն ունիս արհեստիս. թող վկայէ քու արհեստակիցդ, որ անդին խորունկ մտմտուքի մէջ է։

ԿՈՄՍ. (Ինքզինքին դալով) Ձէ, Պարոն, ես անոր ընկերակիցը չեմ.

ՖԻԿ. Ձեզ. տեսնելով որ միասին խորհրդի նստեր էք, կարծեցի թէ մի եւ նոյն արհեստը կը բանիք.

ԲԱՐԹ. (Բարկութենամբ) Բայց դուն ինչ բան ունիս հոս, ինչու եկար. արդեօք նորէն Վարդուհիին յանձնելիք նամակ մը ունիս. ըսէ նայիմ, ինչ կուզես.

ՖԻԿ. Ինչպէս պարապ տեղ կը կշտամբես մարդս. Է՜հ, միթէ այսօր ածիլուելու օրդ չէ՞, պարոն. մինակ ատոր համար եկայ.

ԲԱՐԹ. Վաղուան թող մնայ.

ՖԻԿ. Վաղուան. անկարելի բան. վաղը առտու բոլոր զօրաց դունդը դեղ պիտի առնու եւ մատակարարողն ալ ես եմ. Ալ դնա մտածէ թէ ժամանակս որչափ սուղ է. Ուրեմն շնորհ ըրէ, Պարոն, սենեակդ անցնելու.

ԲԱՐԹ. Ձէ, պարոն, հիմա խուցս չեմ երթար. Բայց... ինչ վնաս ունի թէ որ սա տեղը ածիլուիմ.

ՎԱՐԴ. Որչափ քաղաքավար ես. սենեակս ինչ եղեր է.

ԲԱՐԹ. Մի՛, նորէն մի՛ սրդողիր. ներէ աղջիկս. ձայնիդ անուշութենէ չեմ կրնար զատուիլ.

ՖԻԿ. (Ցած առ կոմն) Զինքը ասկից քաշել հնարքները անհնարին բան է. (Բարձր) Ուր էք նայինք. Եսանդուղն, Աքթուն, պարմնին դաշտը, թասը, սապոնը, ինչ որ պէտք է, բերէք.

ԲԱՐԹ. Թէ որ բան չունիս կանչէ. Ձեզ գիտեր որ խեղճերը յոգնած, թմրած, կրառած հաւ դարձուցիր եւ սատակի պէս ինկած պառկած են.

ՖԻԿ. Ուրեմն ես կերթամ պէտք եղածը բերելու. կարծեմ թէ ածելիքդ կողմը խուցդ է. (Առ կոմս, ցած) Հիմա նայիս թէ ինչպէս դուրս պիտի քաշեմ զանի.

ԲԱՐԹ. (Բանալիներուն կապոցը առնլու համար կրակէ մտածելով) Ձէ, չէ, ես անձամբ կերթամ. (Ցած ձայնով կոմսին կամ. սին) կաղաչեմ, աչքդ վրանին ըլլայ.

## ՏԵՍԻԼ Զ.

### ԿՈՄՍ, ՎԱՐԴՈՒՀԻ, ՖԻԿԱՐՕ

ՖԻԿ. Ա՛խ, փախուցինք, առիթը փախուցինք ձեռքէ. ուրէր թէ բանալիներուն կապոցը ինծի տար. վանդակին բանալին անոր մէջը չէ մի.

ՎԱՐԴ. Այս մէջն է, ամենէն նորն է.

## ՏԵՍԻԼ Է.

### ԲԱՐԹԱՄ, ԿՈՄՍ, ՎԱՐԴՈՒՀԻ, ՖԻԿԱՐՕ

ԲԱՐԹ. (Դառնալով մեկուսի) Ա՜հ, ինչ անխելք եմ. ըրածս գրածս չը գիտեմ. սա սատանայ սափրիչը ինչպէս հոս կը թողում կերթամ. (Ա-

Ֆիկարօ) Այո, այո այս կապոցը (կօ-տայ) կերթամ խօսիս, գրասենեկանին վարի աչքը կը բանամ . . . բանի մը չի դպչիր ա՛ :

ՖԻԿ. Ա՛հ, կըրողը տանի դպչողը . այս ինչ կատաղած մարդ ես . (Մե-կուսի, դուրս ելլելով) Նայեցէք Աստ-ուած ինչպէս մեզի պէս անմեղնե-րուն սրտին ուխտը կը կատարէ :

## ՏԵՍԻԼ Ը.

### ԿՈՄՍ, ՎԱՐԴՈՒՀԻ, ԲԱՐԹԱՄ

ԲԱՐԹ. (Ցած, առ կոմսն) Ահա այս գարշելին է նամակը կոմսին տանո-ղը.

ԿՈՄՍ. (Ցած) Հանած վարածի մը դէմք ունի.

ԲԱՐԹ. Ալ այսուհետեւ չեմ բըռ-նուիր.

ԿՈՄՍ. Արդէն գործին դժուար մասը աւարտեցինք.

ԲԱՐԹ. Ամէն բան կչռելէն ետեւ՝ մտածեցի որ աւելի մեծ խոհեմու-թիւն է զանի խուցս խրկել քան թէ հոս ասոր հետը ձգել.

ԿՈՄՍ. Բայց իրաւ ինչ որ փըռ-փըռայլին, ես ալ մասնակից պիտի ըլ-լայի.

ՎԱՐԴ. Միթէ նոր քաղաքավարու-թիւն է, պարոններ, այդպէս ընկե-րութեան մէջ փսփսալ. հապա դաս Երբ պիտի առնեմ. (Այս միջոցին աղ-մուկ մը կը լսուի դրսէն, նման անօթնե-րու խորտակումին).

ԲԱՐԹ. (Պոռալով) Ի՞նչ չընկայ էր այն. անզգամ սափրիչը բոլոր գեղե-ցիկ կազմս սանդուխէն վար նետած՝ խորտակած պիտի ըլլայ . . . (Դուրս կը վազէ).

## ՏԵՍԻԼ Թ.

### ԿՈՄՍ, ՎԱՐԴՈՒՀԻ

ԿՈՄՍ. Ֆիկարոյին սատանայութեան փառք տալով պէտք եղածին վրայ խօսինք. կաղաչեմ, տիրուհիս, այս իրիկուան անպատճառ ժամ մը որո-շենք իրարու հետ առանձին տես-նուելու, որպէս զի դքեզ այդ գե-րութենէդ ազատեմ.

ՎԱՐԴ. Ա՛խ, Լէնտօրս.

ԿՈՄՍ. Ես կրնամ մինչեւ պատու-հանիդ վանդակը ելլալ. խակ այս առ-տու քեզմէ առած նամակս գիտես ինչ ըրի . . . .

## ՏԵՍԻԼ Ժ.

### ՎԱՐԴՈՒՀԻ, ԲԱՐԹԱՄ, ԿՈՄՍ, ՖԻԿԱՐՕ

ԲԱՐԹ. Գուշակածիս պէս եղաւ. ամէն բան խառնակեր, ջարդ ու բուրդ ըրեր է.

ՖԻԿ. Աւանկ պզտիկ բանի մը համար, այսչափ վայնասուն փրցունել պէտք է. Սանդուղին վրայ բոլորովին մութ էր. (կոմսին կը ցուցնէ բանալին) Վեր ելլելու ատենս բանալիին մէկը բանի մը պատահեցաւ եւ...

ԲԱՐԹ. Կոյր էիր. բանալին խնչուս պատահի... մրչափ անճարակ ես.

ՖԻԿ. Է՛հ, պարոն, գնա ուրիշ ճարպիկը գտիր.

## ՏԵՍԻԼ ԺԱ.

### (Նախորդ անձինք) ՎԱՍԻԼ

ՎԱՐԴ. (Զարհուրած մեկուսի) Պարոն Վասիլը...

ԿՈՄՍ. (Մեկուսի) Ո՛ Երկին.

ՖԻԿ. (Մեկուսի) Որ սատանան փըչեց...

ԲԱՐԹ. (Զանի դիմաւորելով) Ա՛խ, Վասիլ բարեկամ իմ, ուրախ եմ որ ցաւդ անցուցիր. ուրեմն հիւանդութիւնդ ծանրկեկ չէ եղեր. Ցիրաւի, պարոն Լեւոնը վիճակիդ վրայ բերած լուրերովը զիս զարհուրեցուց. եթէ կուզես հարցուր անոր. եւ այլ քեզ տեսնելու կուգայի թէ որ չարգիլէր...

ՎԱՍԻԼ. (Շուարած) Պարոն Լեւոնը...

ՖԻԿ. (Ոտքով գետին կը զարնէ) Է՛յ ատ ինչ է. մինչեւ երկուն սպասել պէտք է անհեթեթ մօրուքի մը համար... կրողը տանի սափրիչն ալ ծախսն ալ...

ՎԱՍԻԼ. (Ամենուն դէմքը նայելով) Պարոններ, շնորհ ըրէք հասկըցունելու ինծի...

ՖԻԿ. Երթալէս վերջը որչափ կուզես հետը խօսէ.

ՎԱՍԻԼ. Բայց թող մէյմը իմանամ...

ԿՈՄՍ. Վասիլ, լաւ կընես թէ որ լռես. կարծես թէ նոր լուր մը պիտի հաղորդես պարոն Բարթամին, որ ամէն բան գիտէ. Ես արդէն իմացուցի անոր զիս հոս ղրկելդ երաժշտութեան դասը քու տեղդ տալու համար.

ՎԱՍԻԼ. (Աւելի զարմանքով) Երաժշտութեան դաս... Լեւոն...

ՎԱՐԴ. (Առ Վասիլ մեկուսի) Խնդրեմ, պարոն Վասիլ, գոնէ դուն չխօսիս, բաւել թէ Լեւոնը քու աշակերտդ չէ. ապա թէ ոչ աչքդ բաց. ամէն բան կաւրես, տակն ու վրայ կընես.

ՎԱՍԻԼ. Վա՜յ, վա՜յ...

ԲԱՐԹ. Ցիրաւի կըսեմ, պարոն Վասիլ, աշակերտդ խիստ տաղանդաւոր մէկն է.

ՎԱՍԻԼ. (Ապշած) Իմ աշակերտս... (Ցած) իմ գալուս պատճառը կոմսին տունէն ելլելը քեզ իմացունել էր.

ԲԱՐԹ. (Ցած) Արդէն տեղեկու-

Թիւն ունիմ, ունիմ, լաւ։

ՎԱՍԻԼ. (Ցած) Ո՞վ բաւ քեզ։

ԲԱՐԹ. (Ցած) Ո՞վ պիտի ըսէ. ահա աս պարոնը։

ԿՈՍՏ. (Ցած) Անշուշտ եւ քիչ մը ակամայ գիր ինծի։

ՎԱՐԴ. (Ցած առ Վասիլ) Քիչ մը ափ 'ի բերան նախանէ, ինչ կըլլայ։

ՑԻԿ. (Ցած առ Վասիլ) Իշ. ինծ նայէ, զատարկ գլուխ, խուլ ես։

ՎԱՍԻԼ. (Մեկուսի) Այս ինչ խայտառակութիւն է. գլխու անդրանիկ աեզ գրեր էք, կատակերգութիւն կը խաղաք։

ԲԱՐԹ. (Բարձր) Էյ, պարոն Վասիլ, փաստաբանին հետ ինչպէս ըրիր...։

ՑԻԿ. Փաստաբանիդ խօսքը ալ գիշերուան ձգէ։

ԲԱՐԹ. (Առ Վասիլ) Միմիակ հարցմունք մը ունիմ, փաստաբանէդ գոհ ես։

ՎԱՍԻԼ. (Շուարած) Փաստաբան մի։

ԿՈՍՏ. (Ձայնելով) Ի՞նչ, միթէ փաստաբանը չտեսնիր։

ՎԱՍԻԼ. (Անհամբեր) Է՛հ, չէ բան մ, չտեսայ փաստաբանը։

ԿՈՍՏ. (Առ Փարթամ մեկուսի) Հիմա ինչու համար մէկ հոգիին առջեւ այդպիսի խօսքեր եւ բացատրութիւններ կը բանաս. հիմա ատենը չէ, ճամբէ, ճամբէ Վասիլը։

ԲԱՐԹ. (Ցած, առ կնոջ) Իրաւ որ իրաւունք ունիս։ (Վասիլին) Բայց չիմացուցիր ինծ թէ ինչպէս յանկարծ հիւանդացար։

ՎԱՍԻԼ. (Երկուութեամբ) Ի՞նչ ըսել կուզես, չեմ հասկնար։

ԿՈՍՏ. (Մեկուսի, անոր ձեռքը քսակ մը սպրդէ) Այո, պարոնը կը հարցընէ Թէ այդ յուսագար վիճակով ինչպէս եղար մինչեւ հոս եկար։

ՑԻԿ. Մահուան պէս գեղնած է դէմքը։

ՎԱՍԻԼ. Հա, հա, հիմա տաքս ջուրը իջաւ...։

ԿՈՍՏ. Միրել՛ի Վասիլ, գնա, պառկէ գնա, հանգիստ չես, եւ կերպարանքդ զքեզ անհանգստի մէջ կը ձգէ. Գնա պառկէ, գնա։

ՑԻԿ. Երեսիդ գոյնը նետեր է, գնա պառկէ։

ԲԱՐԹ. Արդարեւ ջերմից հառը մըղոն մը հեռուէն քիթիս կը զարնէ, գնա. գնա պառկէ. բարեկամ։

ՎԱՐԴ. Ինչու համար անկողնէդ ելար. կըսեն թէ ջերմը տարափոխիկ է, գնա պառկէ, գնա։

ՎԱՍԻԼ. (Սաստիկ զարմացմամբ) Երթամ պառկիմ։

ԱՄԵՆՔԸ. (Միասին) Անտարակոյս, պէտք է որ երթաս։

ՎԱՍԻԼ. (Ամենուն երեսը նայելով) Ցիրուի, պարոններ, ասկից քաշուիլս գէշ չըլլար. կը նայիմ որ ամէն բան փոխուեր է եւ ես հոս օտարականի մը պէս եմ։

ԲԱՐԹ. Վաղը տեսնուինք. թէ որ աղէկի գաս։

ԿՈՍՏ. Վասիլ, վաղը կանուխէկ կուգամ զքեզ տեսնելու։

ՑԻԿ. Կաղաչեմ, այս գիշեր աղէկ մը տաքցիր, քրտնիր։

ՎԱՐԴ. Գիշեր բարի, պարոն Վասիլ։

ՎԱՍԻԼ. (Մեկուսի) Գժուխքը տանիմ գիս թէ որ այս խօսքերէն բան մը հասկցայ, իսկ եթէ այս քանին ալ չըլլար...։

ԱՄԵՆՔԸ. Բարի գիշեր, պարոն Վասիլ, բարի գիշեր։

ՎԱՍԻԼ. (Դուրս ելլելով) Շատ աղէկ, բարի գիշեր, գիշեր բարի։

(Ամենքը ուղեկից կըլլան անոր ծիծաղելով)։

## ՏԵՍԻԼ ԺԲ.

### ՆԱԽՈՐԴՔ (Բաց 'ի Վասիլէն)

ԲԱՐԹ. (Ցածր ձայնով) Ես այս մարդուն դէմքը չհաւնեցայ։

ՎԱՐԴ. Աչուըները կարծես թէ դարձած էին։

ԿՈՍՏ. Բաց օդը զարկած է գլուքը։

ՖԻՆ. Դուք ալ գիտեցիք թէ ինչպէս ատամներս կը խօսակցէր. Նայէ ինչ է մարդս. Թաչունի պէս, հովի պէս բան մը։ (Բարթօմին) Էյ, ալ այս անգամ ըսելիք չկայ, հարկաւ պիտի ամփոփուիս։ (Կրակէն շատ հեռու աթոռ մը կուտայ և սրբիչը կը պատրաստէ)։

ԿՈՍՏ. Ազնիւ օրիորդ, դաս չաւարտած՝ երաժշտական արհեստին վրայ, զոր քեզի սորվեցունելու պատիւը ունիմ, քանի մը կարևոր գիտելիք կամ քեզի հաղորդելու։ (Կը մօտենայ և անոր ականջէն վար կը խօսի)։

ԲԱՐԹ. (Առ Ֆիկարօ) Էհ, մեկզի կեցիր, կարծես թէ գիտամբ առջևս կուգաս կը կանգնիս որպէս զի չտեսնեմ. . . .

ԿՈՍՏ. (Ցած առ Վարդուհի) Վանդակին բանալին քովս է արդէն, կէս գիշերին հոս ենք, գիտցած ըլլաս։

ՖԻՆ. (Սրբիչը Բարթօմին վիզը անցունելով) Տեսնելու ինչ կայ. թէ որ պարի դաս ըլլար, նայելու հետաքրքրութիւն կունէր. բայց երգելու ձայնը հեռուէն. . . . այլ, այլ. . . .

ԲԱՐԹ. Ի՞նչ եղաւ։

ՖԻՆ. Աչքս բան մը մտաւ, ինչ է արդեօք։ (Գլուխը կը մօտեցունէ)։

ԲԱՐԹ. Մի, մի շփեր։

ՖԻՆ. Ձախ աչքս է, կաղաչեմ, քիչ մը ուժգին փչէ։ (Բարթօմը Ֆիկարօին գլուխը կը բռնէ վրայէն կը նայի, սաստիկ կը հրէ անդին և կերթայ սիրահարներուն ետևը կայնելով անոնց խօսակցութիւնը մտիկ կընէ)։

ԿՈՍՏ. (Ցած առ Վարդուհի) Իսկ նամակիդ գալով այնպիսի չփոթութիւն մը առաւ զիս հոս անդ երևալու. . . .

ՖԻՆ. (Հեռուէն, կանխարկէ) Հըմ. . . . հըմ. . . .

ԿՈՍՏ. Եւ իմ ծպտեալ կերպարանքս անօգուտ դառնալու. . . .

ԲԱՐԹ. (Երկուքին մէջ տեղ բռնելով) Ծպտեալ կերպարանքդ մի. . . .

ՎԱՐԴ. (Զարհուրած) Ա՛հ. . . .

ԲԱՐԹ. Շատ լաւ, տիրուհիս, շատ լաւ. մի վրդովիր։ Ի՞նչ մինչև իմ աչքիս առջև, իմ ներկայութեանս այսպէս զիս անարգելու, նախատելու կը յանդգնիք։

ԿՈՍՏ. Ի՞նչ ունիս, Տէր իմ.

ԲԱՐԹ. Նենգաւոր, մատնիչ Լեւոն։

ԿՈՍՏ. Պարոն Բարթօմ, թէ որ այդպէս միշտ խելքիդ գալով օրն 'ի բուն պիտի փրփրիս, ինչպէս որ ականատես եմ, զարմանք չէն ուրեմն այս օրիորդը կինդ ըլլալու գժկամակութիւն ցուցընելուն։

ՎԱՐԴ. Ես, ես անոր կենակից ըլլամ։ Ես իմ կեանքս այսպիսի նախանձոտ ծերուկի մը հետ անցունեմ, որուն անձնամեծ շնորհքը ինծի դարչելի գերութիւն մը պարգևել պիտի ըլլայ։ Ո՛հ Աստուած չընէ։

ԲԱՐԹ. Ո՛հ, ի՞նչ կը լսեմ։

ՎԱՐԴ. Այո՛, բարձրաձայն կըսեմ որ լսեն, իմանան որ հոգիս եւ մարմինս պիտի նուիրեմ զիս այս ատելի բանտէն կորզող ազատող մարդուն, այս վտանգէս, ուր որ թէ անձս եւ թէ ստացուածքս անիրաւաբար լծի տակ կաշկանդուած են. (Վարդուհին դուրս կելլէ).

## ՏԵՍԻԼ ԺԳ.

### ԲԱՐԹԱՄ, ԿՈՄՍ, ՖԻԿԱՐՈ

ԲԱՐԹ. Կատղութենէս կը խեղդուիմ։

ԿՈՄՍ. Ստուգիւ, տէր իմ, շատ դժուարին բան է որ կին մը....

ՖԻԿ. Ի հարկէ, ծաղկահասակ կին մը եւ ալեւոր մարդ մը անհամեմատ բաներ են, որ իրաւամբ ծերունւոյդ գլուխը կը տագնապեն։

ԲԱՐԹ. Գնա, գնա երեսի ջուր ունիք բերան բանալու, երբոր տաք տաք գործի վրայ բռնեցի զձեզ. Անիծեալ սափրիչ, ձեռքէս գայ....

ՖԻԿ. Ես պէտք է որ քաշուիմ, խելքին գալեր է.

ԿՈՄՍ. Ես ալ նոյնպէս, տարակոյս չկայ որ խենդ է.

ՖԻԿ. փախուկ է, փախուկ....

(Դուրս կելլեն).

## ՏԵՍԻԼ ԺԴ.

### ԲԱՐԹԱՄ (Հալածելով)

ԲԱՐԹ. փախուկը դուք էք, վատազգի խաբէբաներ, սատանային արբանեակները, որուն պաշտօնը հոս տեղ կատարելու եկեր էք. կրողը տանի զձեզ...փախուկ եմ ա... կ'ըսէի եւ. ինչպէս սա լոյսը կը տեսնեմ այնպէս ալ տեսայ զիրենք որ... եւ լըրբաբար կուզեն ուրանալ... ախ, այս հանելուկը մինակ Վասիլը կարող է մեկնել. այո՛, կանչել տամ. ծառ կայ հոն... նորէն մոռցայ որ ամենքը սատկեր են... դրացիներէն մէկը. կամ առջեւս ելլողը բռնեմ խրկեմ. Ցիրաւի, խենդանալը բան մը չէ, խենդենալը բան մը չէ.

(Մէջընդարքին ժամանակը թատրոնը կը մթնայ, փոթորիկի ձայն կը լսուի, եւ երգեհոնը կը նուագէ.)

# ԱՐԱՐ ԶՈՐՐՈՐԴ

(Թատրոնը մութ է)

## ՏԵՍԻԼ Ա.

ԲԱՐԹԱՄ, ՎԱՍԻԼ (Թղթեայ լապտեր մը 'ի ձեռին).

ԲԱՐԹ. Ի՞նչ, պարոն Վասիլ, ըստուգիւ չես ճանչեր այն մարդը, ինչպէ՞ս կարելի է այդ բանը.

ՎԱՍԻԼ. Եթէ բան գործ չունիս հազար անգամ հարցուր. միշտ նոյն պատասխանը պիտի ընդունիս. թէ որ Վարդուհիին գիրը քեզի յանձնեց ըսել է թէ կոմսին պատգամաւորն է. Բայց ինծ շնորհած շքեղ պարգեւին նայելով շատ կարելի է որ նոյն ինքն կոմսն ըլլայ.

ԲԱՐԹ. Շատ հաւանական չերեւիր, բարեկամ. Բայց սա պարգեւը, էհ, ինչու համար ընդունեցար.

ՎԱՍԻԼ. Ի՞նչ ընէի. Ես նոյն միջոցին կարծէի թէ վէճի տակ եղած գործին վրայ միաբաներ էք, եւ զիս ծածկել կուզէիք. Իսկ այնպիսի կնճռոտ պարագաներու մէջ ասկէ աւել լի քսակ մը ինծի միշտ անհակառակելի փաստ մը երեւցած է. Բայց վերջապէս ինչ է որոշումդ.

ԲԱՐԹ. Թէ որ իմ տեղս ըլլաս, Վասիլ, վերջին ճիգդ ալ չես թափեր սա աղջկան հետ կարգուելու համար.

ՎԱՍԻԼ. Ճշմարիտը կուզես բարեկամ, ես այնպիսի բան չեմ ըներ, որ եւ իցէ ստացուածքի մասին, բարիք մը ձեռք ձգելը չէ գլխաւոր բանը. այլ բանը զանի վայելելով երջանիկ ըլլալն է. Թէ որ իմ կարծիքս կը հարցունես, չափրող կնկան մը հետ կարգուիլը վտանգի դուռ . . .

ԲԱՐԹ. Իմացայ. փորձանք է եւ . . . կը վախնաս.

ՎԱՍԻԼ. Տարակոյս մը կայ, պարոն . . . այս տարի քանի քանի հատ պատահեցաւ . . . ես ըլլամ տեղդ անոր սիրտը չեմ բռնաբարեր.

ԲԱՐԹ. Վարձքդ կատար, պարոն, Լաւագոյն կը սեպեմ որ զիս ատելով ինքը լայ ողբայ, քան թէ ես մեռնիմ, անոր հետ չի կարգուելուս համար.

ՎԱՍԻԼ. Այդ ուրիշ բան է, կը մեռնիս հա. Ուրեմն կարգուէ, բարեկամ, շուտով կարգուէ.

ԲԱՐԹ. Իմ միտքս ալ այդ է, եւ այս գիշեր հարսնիքը պիտի կատարեմ.

ՎԱՍԻԼ. Ուրեմն մնաս բարեաւ, միայն աշխատէ որ աշակերտուհիիդ առջեւ բոլոր թշնամիներդ սեւցունես եւ դժոխքին անդունդը գլորես.

ԲԱՐԹ. Այդ կէտը չեմ մոռնար.

ՎԱՍԻԼ. Զրպարտութիւն, բժիշկ, զրպարտութիւն. Այս է այսօրուան բանուկ առակը.

ԲԱՐԹ. Ահաւասիկ Վարդուհիին գիրը, զոր Լեւոնը ինծ տալով ակամայ կամօք գործածելու կերպն ալ սորվեցուց.

ՎԱՍԻԼ. Այ մեծս բարեաւ, ժամը չորսին ամէնքնիս ալ հոս կը գտնըւինք.

ԲԱՐԹ. Ժամը չորսին ուշ է.

ՎԱՍԻԼ. Անկէց առաջն ալ անկարելի է. Նօտարը ուրիշ տեղ գրաւած է.

ԲԱՐԹ. Ի՞նչ, ուրիշ ամուսնութիւն ալ կայ.

ՎԱՍԻԼ. Այո՛, Ֆիկարօ սափրիչին տունը. վասն զի իր քրոջը աղջիկը կը կարգէ.

ԲԱՐԹ. Իր քրոջը աղջիկը. բայց քրոջ աղջիկ չունի.

ՎԱՍԻԼ. Այսպէս ըսեր են նօտարին.

ԲԱՐԹ. Աս անզգամը նորէն որոգայթ մը կը լարէ. ինչ սատանայութիւն է....

ՎԱՍԻԼ. Կարելի է մակաբերել որ....

ԲԱՐԹ. Ո՛չ գիտէ. աս մարդիկներէն վախնալու է... այնպէս արագաշարժ են եւ ուշիմ որ... բայց տուած լուրդ միտքս նորէն պղտորեց. Գնա՛, գնա նօտարը առ եւ հոս անմիջապէս դարձիր.

ՎԱՍԻԼ. Չես լսեր որ կանձրեւէ. սոսկալի օդ մը կայ դուրսը. բայց քու սիրոյդ ամէն բանի յանձն կառնում. ի՞նչ կընես, խնդրեմ...

ԲԱՐԹ. Մինչեւ դուռը պիտի ուղեկցիմ քեզ. Մարդ չունիմ. բոլոր սպասաւորներս հաշմանդամ ըրին ձըգեցին.

ՎԱՍԻԼ. Հոգ չէ, ես խմլապանքս ունիմ.

ԲԱՐԹ. Անհաւատիկ, Վասիլ, առ աս պտուտակը, ուզած դուռդ բաց. Ես քեզ կսպասեմ, նօտարէն եւ քեզմէ զատ ճանճ անգամ պիտի ներս չառնեմ այս գիշեր.

ՎԱՍԻԼ. Այսպիսի զգուշութիւններով գործդ յաջող պիտի երթայ.

## ՏԵՍԻԼ Բ.

### ՎԱՐԴՈՒՀԻ (Իր խուցէն ելլելով)

ՎԱՐԴ. Խօսակցութեան ձայն մը զարկաւ ականջս. Ճիշտ կէս գիշեր է. Լինտօրը ինչու չերեւցաւ. Այս գէշ օդը անգամ իր նպատակին նըպաստաւոր է.... Ա՛հ, Լինտօր, արգելօք զիս խաբեցիր... բայց շշուկ մը կը լսեմ... վայ գլխս, դաստիարակս է, փախչիմ, փախչիմ.

## ՏԵՍԻԼ Գ.

### ՎԱՐԴՈՒՀԻ, ԲԱՐԹԱՄ

ԲԱՐԹ. (Ճրագով մը ներս կուգայ) Վա՛յ, Վարդուհի, որովհետեւ դեռ արթուն ես....

ՎԱՐԴ. Ես ալ պառկելու պիտի երթայի.

ԲԱՐԹ. Այս սոսկալի եւ փոթորկալի օդին քնանալը դժուար է, եւ ես ալ շատ ստիպողական ըսելիքներ

ունիմ քեզի ։

ՎԱՐԴ. Ի՞նչ է ըսելիքդ, Պարոն ։ Բաւական չե՞ զիս ցորեկները տանջելդ ։

ԲԱՐԹ. Վարդուհի, մտիկ ըրէ ինծի ։

ՎԱՐԴ. Վաղը մտիկ կընեմ.

ԲԱՐԹ. Կաղաչեմ վայրկեան մը միայն ։

ՎԱՐԴ. (Մեկուսի) Թէ որ ելլայ գայ, ինչ պիտի ընեմ ։

ԲԱՐԹ. (Անոր նամակը ցոյց տալով) Այս գիրը կը ճանչնաս ։

ՎԱՐԴ. (Ճանչելով) Ա՛հ, Տէր Աստուած . . . ։

ԲԱՐԹ. Վարդուհի, ընաւ միտք չունիմ քեզի յանդիմանելու այս բանին համար ։ Քու տարիքդ եղողները կրնան երբեմն մոլորիլ բայց ես քու բարեկամդ եմ, մտիկ ըրէ ինծի ։

ՎԱՐԴ. Չիմա խելքս գլխէս կը թռչի ։

ԲԱՐԹ. Այս նամակը զոր առ Ալմավիվան կոմս գրած ես . . . ։

ՎԱՐԴ. Առ Ալմավիվան կոմս ։

ԲԱՐԹ. Այո, նայէ ինչ անզգամ մարդ մ՚է ։ Սոյն գիրը ընդունելուն պէս կսկսի ասդին անդին պարծենալ ․ եւ այն իմ ձեռքս անցաւ այնպիսի կնկէ մը, որուն սիրոյն համար զքեզ մոռցեր, զոհեր է ։

ՎԱՐԴ. Ալմավիվան կոմսը . . . ։

ԲԱՐԹ. Այո կը տեսնեմ որ կը հիանաս կը մնաս այսպիսի անօրէնութեան մը վրայ ։ Վարդուհի, կանայք իրենց անխորհրդութեամբը միշտ միամիտ եւ դիւրահաւան կըլլան ։ Բայց աչքդ բաց եւ իմացիր թէ ինչ ահռելի թակարդով զքեզ պիտի որսան եղեր ։ Այն կինը ամեն բան ծանոյց ինձ, թերեւս քեզի պէս փառանգաւոր հետամուտէ մը ազատելու մտօք ։ Յիրաւի, քանի յիշեմ դողս կը բռնէ ։ Ալմավիվանը, Ֆիկարօն, եւ Լեանը, որ Վասիլին կեղծ աշակերտն է, եւ իրօք կոմսին վատ արբանեակը, մէջերնին սոսկալի դաւակցութիւն մը հնարեր են եւ զքեզ այնպիսի անդնդի մէջ պիտի գահավիժեն եղեր, ուսկից ազատելդ անհնարին բան մըն էր ։

ՎԱՐԴ. (Յուզագին) Ո՛հ, ինչ ահռելի ոճիր . . . Լէնտօրը . . . ինչ այն պատանին . . . ։

ԲԱՐԹ. (Մեկուսի) Վայ, Լէնտօրն է եղեր ։

ՎԱՐԴ. Ալմավիվան կոմսին . . . ուրիշի մը համար զիս հրապուրելու եղեր է . . . ։

ԲԱՐԹ. Այդպէս ըսէին նամակդ տալով ։

ՎԱՐԴ. (Կատաղած) Ա՛խ, այս ինչ անիրաւութիւն է . . . պիտի պատժեմ զինքը ։ Պարոն, դու հետս կարգըւելու կը փափաքէիր արդէն . . . ։

ԲԱՐԹ. Գիտես արդէն ինչպէս կայրիմ, կը մրկիմ քեզի համար ։

ՎԱՐԴ. Եթէ նոյն կրակով դեռ կը վառիս, ես քուկդ պիտի ըլլամ ․

ԲԱՐԹ. Լաւ, լաւ, այս գիշեր նոտարը պիտի գայ հոս ։

ՎԱՐԴ. Այս բաւական չէ ։ Ո՛ երկին ․ այս ինչ նուաստութիւն է իմս ․ գիտցիր, պարոն, որ անզգամ նենգաւորը այս գիշեր աս վանդակէն ներս պիտի մտնէ, որուն բանալին վարպետութեամբ մը քովէդ գողցան ։

ԲԱՐԹ. (Բանալիներուն փունջը քննելով) Ա՛խ, անօրէններ ։ Աղջիկս, ալ քովէդ չեմ հեռանար ․

ՎԱՐԴ. (Սոսկումով) Ա՛հ, կը գողգո-

զամ, պարծն․ չասպա թէ ո՛ւր սրով եւ հրաշամամբ զամ, ինչ պիտի ընենք․

ԲԱՐԹ․ Աղէկ ըսիր․ վրէժ քանիրու առիթը ձեռքէ չփախցունեմ. Դուն Վարդուհի, Մարքիզային խուցը գնա, եւ նորոէն լաւ մը կղպակը գիր․ Ես երթամ գինուորներ բերեմ եւ տանը մէջ անոր գալուն սպասեմ․ Թէ որ անգամ մը իբրեւ գող գինուորներու ձեռքը անցնի թէ վրէժ առած եւ թէ ազատած կըլլանք․ վստահ եղիր որ քու հաւատարմութեանդ փոխարէն իմ սէրս պիտի մխիթարէ զքեզ․

ՎԱՐԴ․ (Յուսահատ) Խնդրեմ մոռցի՛ր միայն իմ մոլորութիւնս․ (Մեկուսի) Ես իմ յանդգնութեանս պատիժը գտայ․

ԲԱՐԹ․ (Ելթալով) Օ՛ն երթամ անոր որոգայթս լարեմ վերջապէս ըրի հըրի, աղջիկը ձեռք անցուցի, (կելթայ)․

## ՏԵՍԻԼ Դ․

### ՎԱՐԴՈՒՀԻ

ՎԱՐԴ․ Իր սիրովը պիտի մխիթարէ եղեր․․․ զիս իմ չուառս․․․ (Թաշկինակը կը հանէ և կուլայ սաստիկ լալ) Ինչ ընեմ հիմա․․․ հիմա ուր որ է կուգայ․ Միտքս դրի անոր սպասելու եւ վատութիւնը երեւան տալու․ Քանի որ այս անիրաւութիւնը գործեց, չեմ վախնար, այլ չի կրնար բռնել զիս․․․ Ա՛հ, եւ որչափ արիասրտութեան կարօտ եմ․ Ա՛յն ազնիւ դէմքը, անուշ ճակատը, սրտաշարժ ձայնը քանի․․․ բայց, խաբերայի մը լրտեսը ու արբանեակն է եղեր․ Ա՛խ, որչափ ողորմելի, ողորմելի եմ ես․․․ Տէր Աստուած․․․ վանդակը կը բանան․ (Ներս կը քաշուի)

## ՏԵՍԻԼ Ե․

### ԿՈՄՍ, ՖԻԿԱՐՕ (Վերարկու մը հագած, պատուհանը կերեւի)

ՖԻԿ․ (Դէպ ի դուրս կը խօսի) Ոտքի ձայն լսեցի․ մէկը ձգեց փախաւ․ ժամանեմ կըսեմ․

ԿՈՄՍ․ (Դուրսէն) Մարդ էր․

ՖԻԿ․ Ո՛չ․

ԿՈՄՍ․ Վարդուհին պիտի ըլլայ որ քու վայրենի դէմքէդ սարսափած փախած է․

ՖԻԿ․ (Ներս խուցը կը ցատկէ) Այնպէս կերեւի եւ ինծ․․․ անձրեւ, փոթորիկ, որոտում ու փայլակ չի նայելով վերջապէս հասանք․

ԿՈՄՍ․ (Երկար կօշիկ մը հագած) Ձեռքդ ինծի տուր․ (Ինքն ալ վար կը ցատկէ) Յաղթանակը միրս է․

ՖԻԿ․ (Վերարկուն կը նետէ) Կարծես թէ չորս կողմէ գնդակէ․․․ անձրեւային գնդակներէ զարնուած

կը պաշտանք․ չիրաւի սքանչելի օ-
դըն մըն է բաղդ բնակելու համար։
Տէր իմ, դու ինչպէս կը գտնես այս
գիշերային օդը։

ԿՈՄՍ։ Սիրահարի մը համար ըղ-
ձալելի է։

ՖԻԿ։ Խօսք չիկայ․ բայց խոր-
հրդակցի մը համար փոքր ինչ…
հապա թէ որ գան մեզ այս տեղ կո-
խեն, ինչ ապուր պիտի ուտենք։

ԿՈՄՍ։ Պառն հեռու չեն մի։ Ես
ուրիշ հոգ մը ունիմ․ թէ որ օրիոր-
դը չուզէ պատսպարանին ամենէն
դատել, այն ատեն ինչ պիտի ը-
նենք։

ՖԻԿ։ Անհոգ մնանք։ Աղջկան
վրայ երեք զօրաւոր գրգռիչ ունիս․
սէր, աւելութիւն եւ երկիւղ։

ԿՈՄՍ։ (Դէպ 'ի ներս մութին կը նայի)
Բայց ես կը մտածեմ թէ ինչպէս
բացէ 'ի բաց ըսեմ անոր որ նոտարը
զմեզ կարգելու համար քու տունդ
կըսպասէ։ Այս խորհուրդս տարօրի-
նակ եւ յանդուգն պիտի անայէ եւ
զիս ալ անիծէներ։

ՖԻԿ։ Թէ որ նա զքեզ անիծեներ
անուանէ, դուն ալ զինքը անգութ
կոչէ։ Կանայք կախարդին որ մար-
դիկ զիրենք անգութ անուանեն։
Երկար խօսք ինչ պէտք է․ թէ որ
անոր սէրը փախուցածիդ պէս ջերմ
գտնես, այն ատեն մի՛ ըլլալդ անոր
կը յայտնես, եւ ինքն ալ քու զգա-
ցմանցդ վրայ վստահ կը մնայ։

## ՏԵՍԻԼ Զ.

ԿՈՄՍ, ՎԱՐԴՈՒՀԻ, ՖԻԿԱՐՕ (Որ սեղանին վրայ եղած մոմերը կը վառէ)

ԿՈՄՍ։ Ահաւասիկ, ինքը… իմ
գեղանի Վարդուհիս է։

ՎԱՐԴ։ (Շինովի համեստութեամբ)
Պարոն, սկսեր էի անձկանօք սպա-
սելու քու գալստեանդ վրայ։

ԿՈՄՍ։ Զմայլելի անձկութիւն…։
Ազնիւ Օրիորդ, վիճակիդ դառնու-
թենէ օգուտ մը քաղել չի կարծուե-
լու համար, չի վայլեր արդարեւ ինձ
առաջարկել քեզ իմ թշուառ բաղ-
դիս բաղդակից ըլլալու, սակայն ե-
թէ կամավին ապաստանարան մը
ընտրելու յօժարութիւն ունիս, կերդ-
նում պատուոյս վրայ…։

ՎԱՐԴ։ Պարոն, թէ որ ձեռքս առ
քեզ կարկառելէն ետեւ, սիրտս ալ
անմիջապէս քեզ չնուիրէի, դուն
հիմա հոս չէիր գտնուեր։ Թերեւս
այս մեր անսութեան մէջ անիրաւու-
թեան մը նշմարուի․ բայց զայն ան-
հրաժեշտ հարկի մը տալով յուսամ
որ զիս մեղադրելու չես գտներ։

ԿՈՄՍ։ Ուրեմն, դու Վարդուհիս, կը
զիջանիս թշուառի մը, չարժանաւորու
եւ անհարուստ մարդու մը կենակի-
ցը ըլլալու…։

ՎԱՐԴ։ Հարստութիւն․ Ազնուա-
կանութիւն։ Ահ, ատոնք բաղդին
պատահական խաղերն են։ Թէ որ
մինակ քաջ համոզուիմ որ սէրդ եւ
խորհուրդներդ անպատիր են եւ
անսուտ…։

ԿՈՄՍ։ (Անոր ոտքը ինկնալով) Ահ,
Վարդուհիս, կը սիրեմ, կը պաշտեմ
զքեզ…։

ՎԱՐԴ։ (Սրտմտած) Հեռու, հեռու,

## ՏԵՍԻԼ Ը.

### ՆԱԽՈՐԴՔ. ԲԱՐԹԱՄ, ՊԱՇՏՕՆԱԿԱԼ ՄԸ, ԶԻՆՈՒՈՐՆԵՐ, ՍՊԱՆԵՐ (Ջահերով)

---

ԲԱՐԹ. (Շեմին վրայ որ կանգնէ Վարդուհիին ձեռքը կը համբուրէ. և Ցիկօրն կոշտաբար վարէը կը դնէ. կը պտտցնէ տակին վ գէն բռնելով) Այսա ազնիւները Վարդուհիին քով ինչ բան ունին. բռնեցէք. ամէնքը բռնեցէք. Ես արդէն մէկուն միւսին բռնած եմ.

ՆՈՏ. Նօտարէն ինչ կուզես.

ՎԱՍ. Այդ ինչ անհասկ կատակ է. Նօտարդ չես ճանչեր.

ԲԱՐԹ. Կատակ չէ. ան, Վասիլ. էհ, ինչպէս եկար հոս.

ՎԱՍ. Ես պէտք է որ քեզի հարցընեմ թէ դուն որ ծակը մտեր էիր.

ՊԱՇՏՕՆԱԿԱԼ. (Ցիկարօն ցուցնելով) Կեցէք նայիմ, պէտք ճանչնեմ աս բռնաւորը, այսպէս տարաժամ այս տան մէջ ինչ բան ունիս դուն.

ՖԻԿ. Տարաժամ. պարոն չեմ տեսներ որ առաւօտեան և երեկոյեան մէջ անցուն ենք. Բայց ես ալ Նորին Վսեմութեան Ալմավիւան կոմսին ըսպասաւորէն մէկն եմ.

ԲԱՐԹ. Ալմավիւան.

ՊԱՇՏ. Ո՞վ ըսաւ թէ տանը գող են.

ԲԱՐԹ. Կարծ կայլէ. Վսեմափայլ կոմս, արդէն գիտէք որ ես ամէն տեղ ձեր Վսեմութեան խոնարհ ծառան եմ, սակայն գիտէք նաև որ աստիճանի մեծութիւնը այս տանս մէջ կարևորութիւն չունի. Ուստի չնորհք ըրէք անկից հեռանալու.

ԿՈՄՍ. Այո, աստիճանի մեծութիւնը անզօր է այս տեղ, բայց անկէց զօրաւոր բանը այն է որ այս օրիորդը իր յօժար կամօք նախապատւիւ համարեց ինծի հետ միաբանալ քան թէ քեզի հետ.

ԲԱՐԹ. Վարդուհի, ինչ կըսէ.

ՎԱՐԴ. Ըսածը ճշմարիտ է. Ես ինչու կը զարմանաս. Միթէ չի գիտեն որ այս գիշեր խարեբայէ մը վրէժս պիտի առնէի. Ահա նոյն վրէժս առի.

ՎԱՍ. Ես չէի ըսեր, սիրելի բժիշկըս, որ նոյն ինքն կոմսն է.

ԲԱՐԹ. Իմ ինչ փոյթս է. Անմտանութիւն կը սեպեմ զուն այս ծաղրելի ամուսնութիւն. Հապա վկաները ուր են.

ՆՈՏ. Ամէն ինչ օրինաւոր, և կարգին է. Այս երկու պարոններուն հետը ես ալ վկայ եմ.

ԲԱՐԹ. Ինչպէս. պարոն Վասիլ. դուն ալ ստորագրեցիր.

ՎԱՍ. Ի՞նչ ընեմ. Աս թշուառական մարդն ալ անզիմադրելի փաստեր ունի գրպանին մէջը.

ԲԱՐԹ. Ես անոր փաստերը սառկի մը չեմ առներ. Իշխանութիւնս գործածելու իրաւունք ունիմ.

ԿՈՄՍ. Նոյն իշխանութիւնդ չարաչար գործածելուդ համար անհ կորուսիր.

ԲԱՐԹ. Օրիորդը դեռ հասուն չէ.

ՖԻԿ. Ազատութիւն առնելու համար հասունի չեն նայիր.

ԲԱՐԹ. Քեզի հետ ով կը խօսի, աստանաներուն պաշտպանը.

ԿՈՄՍ. Օրիորդը ազնիւ է և գեղանի, իսկ ես բարձրաստիճան, գեռահասակ և հարուստ եմ. Նա անգամ կամօքը իմ կինս եղաւ. Հիմայ

Ինչ իրաւամբ եւ մի կրնայ յանդըգ-նիլ զինք խրատելէ զատել ։

ԲԱՐԹ. Իմս է աղջիկը, եւ մարդ կարող չէ զանի իմ ձեռքէս կորզել ։

ԿՈՍՏ. Պարոն, նա այսուհետեւ քու բռնական իշխանութեանդ ներքեւ չի գտնուիր. օրինաց վահանը անոր պաշտպանն է ։ Եւ այս արդարութեան պաշտօնակալը, որուն գուն անձամբ հօս առաջնորդեցիր քու բռնութեանդ դէմ զանի պաշտպանէ ։ Հալածանք եւ բռնութիւն կրողներուն պաշտպան հանդիսացողները միայն՝ ճշմարիտ իշխաններ են ։

ՊԱՇՏ. Ճշմարիտ է. Սակայն այսպիսի օրինաւոր ամուսնութեան բրած դիմադրութենէ ինչ կրնանք մտածել. բայց եթէ իր անձին առաջուածները անկարան կերպով անտեսեր է. եւ կերկնչի որ իրմէ հաշիւ կը փնտռեն ։ Բայց այն հաշիւը պէտք է որ տայ ։

ԿՈՍՏ. Թող նախ մեր ամուսնութեան հաւանութիւն տայ, եւ ես ուրիշ բան չեմ պահանջեր ։

ՖԻԿ. Բայց եթէ հարիւր ոսկեայ ընկալագիր մը. մեր գործը մէջը պիտի խառնար այս չիմնութեան ատեն ։

ԲԱՐԹ. (կատղած) Ամէնքն ալ ինծի դէմ են. չգիտնալով գլուխս տարեր պիծակներու բոյնը խոթեր եմ ։

ՎԱՍ. Արդարեւ պիծակի բոյն ։ Բժիշկ, ալ կինիկը մացիր, եւ զանէ ժառանգած ստակներդ համբէ, եւ... ։

ԲԱՐԹ. Է՛հ, հանդարտ թող տուր զիս. Վասիլ. գուն ալ ինչ ուկեէր մարդ ես ։ Ի՞նչ ընեմ ես ոսկին ։ Ի հարկին պէտք է, ծամբ չեմ ներեր, իրա, բայց միթէ կարծես թէ արծաթին սիրոյն համար միայն կը գիջանիմ ։ (Ստորագրէ) ։

ՖԻԿ. (Բոհռանելով) Հա, հա, հա, Տէր իմ, կը նայիս ոսկիին ձայնը... երկուքն ալ մի եւ նոյն խմորէն ելած են ։

ՆՕՏ. Այ ես, պարոններ, բոլորովին գործին մէջը կորսուի. միթէ նոյն անունը կրող երկու հատ օրիորդներ չի կան ։

ՖԻԿ. Ոչ, պարոն. խելքդ ուր է. միմիակ մէկ, մէկ հատիկ կայ այնպիսի օրիորդ մը ։

ԲԱՐԹ. ( Յուսահատ ) Ինկ ես որ առջուշի պէս ամուլուքը փերայի, որով ամուսնութիւնը աւելի ապահով կերպով կատարուեցաւ ։ Ա՛խ, ես ձեռօքս, անզգուշութեամբս այս ձիւնը իմ գլխիս բերի ։

ՖԻԿ. Անմտութենէ բաէ, անմտութենէ. Զգաստացիր, պարոն բժիշկ, եւ խոստովանէ որ երբոր երիտասարդութիւնը եւ սէրը իրարու հետ արթնին կը միաբանին ծերունի մը խաբելու համար, այս ծերունին ինչ որ ընէ անոնց դէմ, իրաւունք ունենայ բռնելու թէ Անօգուտ զգուշութիւն է ։

**Վ Ե Ր Ջ.**

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Պօմարշէ ծնա. 1752 : Մեռա. 1806 : Ժամագործի մը տղայ էր. եւ նախ իր հօրը արհեստին հետեւեցաւ: Երաժշտութեան շատ ճաշակ ունէր, եւ կիթառ ու քնար քաջ զարնելուն համար Լուի ԺԵ. պալատը երաժշտութեան դասատու անուանեցաւ. յետոյ առեւտրական գործոց ըզբաղիլ սկսաւ եւ իր գործունէութեամբը, մանաւանդ Ամերիկեան անկախութեան պատերազմին ժամանակ, երբ զէնք ու համբար մատակարարելու պաշտօնը ունէր, շատ հարստութիւն դիզեց: Գաղղիական մեծ յեղափոխութեան օրովը առ ժամանակեայ վարչութեան անդամ ընտրուեցաւ իր ազատասիրութեան համար: Պօմարշէ երեւելի եղած է իր բանակըռուական տաղանդով եւ նշանաւոր գրութիւններ ու յիշատակարաններ ձգած է:

Թէեւ արդէն Վօլթէր բատրը տեսակ մը ամպիոն ըրած էր՝ ուսկից իր գաղափարները հասարակութեան կը հաղորդէր եւ նախապաշարումները ջնջել կը ջանար, սակայն Պօմարշէ այս մասին զանի գերազանցեց ժողովրդեան կրից խօսելով՝ այնպէս որ Լուի ԺԶ. շփոթ, շուայլ, ապականակիր իշխանութեան ժամանակ Պօմարշէ բատրօնէն այնպիսի բունալի սլաքներ կարձակէր բարուց ու եղծմանց դէմ, երբեմն ծաղր, երբեմն սիրտ շարժելով՝ որ Ռապլէի, Ռուսօի եւ Վօլթէրի պատրաստած յեղափոխութիւնը կերպով մը փութացուց : Պօմարշէ ունի նաեւ շինած Ֆիկարօի ամուսնութիւն, Եւգինիա, Յանցաւոր Մայր անուն կատակերգութիւնները, որոց ընտրելագոյնն է, կըսէ, Լամարք, Սեվիլլի Սափրիչը:

